# ԱՐՁԱԳԱՆԳ

Կ. Ա. ՊԱՐՍԱՄԵԱՆ

(ԿԱՐՊՕ)

Ա. ՄԱՍ

Չալանըն Արմաղանը՝ չա՛մ սաղըզը

Թրք. առած.

Նշմարումնե՛ր
Վէպիկնե՛ր
Արձակ քերթուածնե՛ր
Երկրագործը չո՛րս եղանակ-
նէրու մէջ

ՎԱՌՆԱ
Տպ. Վզայիճեան
1909






Կ. Ա. ՊԱՐՍԱՄԵԱՆ

(ԿԱՐՊՕ)

Ա. ՄԱՍ

*Ջոպանըն Ալմաղանը՝ չա՛մ սագըզը*

*Թրք. առած.*



*Նշմարումնե՛ր*
*Վէպիկնե՛ր*
*Արձակ քերթուածնե՛ր*
*Ճամբորդի նօթեր*
*Երկրագործը չո՛րս եղանակ-*
*ներու մէջ.*



ՎԱՌՆԱ

Տպ. Վզայինեանթ

1909

# ՅԱՌԱՋԱԲԱՆԻ ՏԵՂ



Ատեն մը, երբ ցուրտ իրականութիւնը չէր փշրած երեւակայութեանս թեւերը, ու, պատրանքը իր վարդ-մարմաշով շղարշած էր ուղեղս ու սիրտս՝ սի՛րտն եմ ունեցեր՝ սա պատկերները ուրուագրելու, սեւեռագրելու ու յանձնելու թերթերու՝ փառասիրութեան խափուսիկ ու խուսափուկ տենչանքս յագեցնելու...

Ա՛ս պատկերներուն ընթերցումը, հիմա զուարճութիւն մը, հեգնանք մը կ'առթէ ինծի. ատո՛ր համար ամփոփեցի սա՛ հատորին մէջ, մերթ վերապրելու ան անո՛ւշ օրերը, որ, խուսափած երազի մը թովչութիւնովը բաբախել կուտան լքուած, մամռոտած, բորբոսած սրտի՛ս...։

Անայլայլ պահեցի ա՛ս պատառիկները։ Անոնք՝ ա՛լ ուրիշի՛ն կը պատկանին, ու, խղճմտանքը կ'արգիլէ իմ՝ իրականութեան ցրտութիւնը խառնե՛լ անոնց մէջը...։

Սրտիս սա՛ բողոքները կը ղրկե՛մ սիրելիներուս, անոնց, որոնք ականատես են եղած՝ սրտիս փուլերուն դիմայեղումներուն։ Անոնց թելադրութիւնը, փափաքը տուաւ ինծի ա՛ս գաղափարը...։ Անոնց, որոնց մէջ՝ գրահմուտներ ալ կան՝ խմբագիրնե՛ր ալ...։

Ու հիմա, վիժած յոյսերուս տուայտումին մէջ, կեանքիս խելեակին սա՛ պարեխներուն, խորակներուն ու ալիքներուն հետ մարտնչումին մաքառումին՝ իսկ պահուն՝ «ՍՐՄԱՂԱՆԻՍ» միջոցով՝ սիրելիներուս սրտին մէջ կայք մը կ՚որոնեմ՝ ազգաւորի աղկաղկ հեւքերս ծրարելու...։

## Բ.

Հաճի-Փանաքոյին գեղուղէշ ծառերուն, տա-րաշխարհիկ բոյսերու, [redacted] Թաղարներուն ու ատղարթներուն չքպաստանին տակ, ծփծփուն ծովուն փրփ-րոտ ժապաւէնին առընթեր՝ կարօտախտէ բըշակնած ա-կանողիքս կը սեւեռե՜մ դէպի ձեզ՝ ո՜վ սիրելինե՜րս...

Գուցէ վաղը. պատրոյր կեանքիս ա՛ս յենակէ՛ն ալ գայթի ու ա՛ն ալ անցնի՛ յիշատակիս՝ հո՛ն իր ցա-ւո՛ւտ բաբախումներով ապրելու՝ ի՛ս կրծելո՛ւ ու այ-րեցնելո՛ւ ալ համար....։

Երանի՛ թէ զօրէին մատիկներս շարուել, կարկ-նել սա՛ պատկերներն ալ՝ չի կորսնցուցա՛ծ կինեղուտ գոյներնի՛ն։

Ո՛հ նժդեհի կեանքիս խաւարչտին ու գէջ այերին մէջ՝ պլպլացող կայծերն են ան ընկերներս, որո՛նք մա-նակի՛ց ըրին իս, իրենց սրտին խրախճանքին. ի՞նչ-պէս չի յիշել անոնց հետ ապրած մոռացօնքի ան յա-մայր ժամերս, ուր՝ վիշտերս մրափեցի՛ն պահ մը գէթ....։

Ի՞նչպէս չի յիշել՝ Կալաթա՛ն՝ պուրակներով սա-ղաւարտւած սարաւանդո՛վ ուր երգչուհիներ՝ սիրահար-ներո՛ւ կըսպասե՛ն... Թրաքա՛ն՝ ծովակարկառ ու ծո-վահայաց պատշգամո՛վ, սարփենաներու խիզքերով հիւ-սուա՛ծ վրաններո՛վ. Ջրցայտո՛վ....։

Պապա Էլէնան իր ժօռատ սպասուհիով, պա-տառուկներով վրանուած առանձնախուցերով, ուր սէրեր կը պսակուին՝ ու բաղձանքնե՛ր կը հալին. կնճռոտած դէմքեր ժպիտ կը հագնին, սրտեր կ՚աղնծին, կը բով-հրին կը ծխան ու մարմաջներ կը մարին՝ գարեջուրին փրփուրին հանդիսութիւնով....

Կրօզանները՝ ուր անչափ երկսեռ համախմբու-մին մէջ, չես տեսներ, օտար կինով այր մը։ Ըս-

*վայրին պարտէզին՝ ուր, խորովածին ճենճերումը կը շոգիանայ՝ օծանելիքներու ու ծաղիկներու մուշկանոտին հետ, ուր գինին կը քրքումայ, ու գարեջուրը կը փրփրի՝ բոսոր շրթունքներու հպումի պահուն․․․։*

*Ո՜հ ինչպէս չի յիշել ա՛ս ամե՛նը․․․։*

*Ու սա պատկերներու մէջէ՛ն է որ Ձեզի՛ կ՚երկըննամ, ո՜վ հայրենիքի սիրելինե՛րս․․․*

Կ. Ս. ՊԱՐՍԱՄԵԱՆ

*Վառնա*, 16 *Յունիս* 1909





# ՆՇՄԱՐՈՒՄՆԵՐ



## ԵՐԴԻՔԻ ՊԱՏԿԵՐՆԵՐ

Օր. Ս...ին

Քաղքցիին ննջասենեակը՝ դուները փակուած, մէ-ժերը իջեցուած բանտ մըն է։ Կիւրինցին երկինքի կուրթ կամա՛րը ունի միայն իր վրայ։

Աղամամթնիկին կ'արթննամ։ Պաղըղկուն սիւք մը վերնատորթս կը փչոտէ։ Սպասուհիս ձայն չեմ տար. ննջատեղիս մէջ վառած մախր մը կը ձգեմ ու ածուխ-ները։ Կը սկսի վժա՛լ։

Այլազան պէսպիսութիւնով քաղէքատուսքորբ պատկերներ, գիւրափոխ փառուա՛ծ են դա՛ երդիքին վը-րայ։ Հուսա՛, ձթիի մը վրայ չնթրկած, հատուկ-բու-սուկ աղջիկ մը, թոչունի աղուամազիքով ու չիւղերս-քեկորներով խառ-կուռուած բարձիկի մը վրայ ձգած գլուխը։ Վարսերուն չրջանակումին մէջ երեսը՝ կը փայփլա՛յ՝ քթինքէն ու արիւնին եռքէն չիճիապատուած։ Այլ ոտքովը կից մըն է տուեր վերմակի կտորին ու մէկ կողմ հրեր՝ հովահրելո՛ւ եւ ցուցադրելո՛ւ իր սպիտակ-կարծուկ, լեցունկ սիւնը՝ ուժե՛ղ իրանը վեր բռնող։

Թեւերը, քերովբէութենէն սթափուած՝ դուրս են ձգուած։ Քերովբէութիւնը՝ մկանական սովորոյթ մըն է դարձած։ Ձեռքերը անգիտակցաբար կ՚երթան փրթած կամ քակ-ուած կոճակներուն ձգած բացուածքներէն ներս՝ լանջ-քին, անութներուն ու այլ տեղեր, եղունգի քերթը-տուքներ պեղելու։

Հունա՝ ճզմած էրիկի մը հիւանդոտ կողին կպած մեղ հարս մը։ Ետոսէր էրիկը՝ վերմակին կէ՛սն ա-ռակն է առեր, առանց խորհելու իր մէկալ կէսը, ու քրտինքի մը մէջ գլտորտկելով. վերմակը հետը տարե՛ր է՝ անպատսպար թողելով կնիկը, որ պէտք չունի՛ արդէն արհեստական այգ պատսպարանին. քրտինքի արտածորութներ կը կայլակին տակաւին քունքերուն քովտանքը։ Քէչ մը անդին, օրօցքի մը կամարին յեց-մա՛րդ. մը, մխկիր քուրջ մը նետած վրան կաթին պը-տուկը մանչուկին բերնին մէջ մոռցած, ծծմօրի մը ան-վրդովութիւնով՝ քունը տարե՛ր է։

Աւելի անդին պառաւնի մը փողոցի դասը կը չա-րունակէ՝ խեռ գլտորտկումներով քունի՛ն մէջ։ Ա-տե՛ղ, թոմթրկած աղբարդյիկ է ծէ մը վերմակին տակ ամփոփած, կծկուած կը մրմռա՛յ։ Քովը բարակ պատուհա-նը ծալքին տակ՝ նոր հարս մը երազային վրդովանքի մը հեշտանքին մէջ՝ թեւերուն մէկը բարձին վրայ նե-տուած ու միւսովը՝ անկար սեղմած, մարմինին որոշապէս երեւցող փոս ու ցածերուն, կարկառներուն գիծ-գա-գաթորումը կը գծագրէ չիթին վրայ։

Ամուսնանալու տարիքին թեւածած կարճներ ու արեւուն տակ եփած երիտասարդ մը չի՛ կրնար տեղ մը հանգչիլ։ Վայրկեանը անգամ մը կը դարձմըրկի. դիրք կը փոխէ ու երբէ՛ք գոհ չերեւիր։ Ոտքերը վեր կը քա-

չէ. միրմակը կը վրանացնէ, կը նետէ՜, կը թացուի՜…

Ծերուկ մարդ մը, մաղաշի տոպրակ մը բերնին մէջ դարձմրձկելով հազալով կը կկուզի անկողնին մէջ ու թքամանին կ՚երկննայ։ «Փա՛ռք՝ քեզ Աստուած»ը կցերգն է իր հազին։ Մուխ–քարշին մէջ ծխախոտը կը կոէ, բթամատով կը տեղաւորէ ու «ղաւ» մը բռնկցընելով վրան կը ծծէ եւ մուխին օղակաւորումը. ծըխախոտին կածկլտացումը ծա՛յր կ՚առնէ։

Հասուկ պատանի մը, յանկարծ արթննալով այգեստանը կը ցատկէ, կանանչաւիւս վրանին տակ դըրանելու դրացիին աղջիկը։ Շրթունքներ իրարու կը հըպին, կուրծներ իրարո՛ւ կը սօտին. թեւեր՝ իրար կը զօտեւորեն ու գլուխներ ուսերու կը դրուին. չե՛ն խօսիր։ Սիրոյ մոլուցքէն ապախանձուածնե՛ր են անոնք։ Աղնծուած սիրտերուն հո՛ւրքը կ՚անցնի աստնկով։ Կը-խնկաւէ Ասնոց վրայ՝ սարսռացող, հողմահարող սաղարթներու լայնշի չեպեր վայրահակ կ՚օրօրուին երեւնուն քուրրատելով սօսափելով՝ քունեբունուն անուշութիւնը ու երազանքներուն հեշտաւէտութիւնը կը համբերգեն։ Լուսղաշնաւորումով մը։

Աւօտը կսկսի ճերմկոտիլ։ Այգեստանը ոռոգելու համար կապուած կ ա ւ ա ռ ը կը սորսորի ճլճալով կը սահի՛ մարգին վրայէն։

Սուր ճիչեր աքաղաղներու, հաւերու կագկանչիւններ։ Սամավարը ճերմակ եփ եկած է։ Պատուհանին առջեւ փռած անկողինիս վրայ ընկողմանած, անձընդիւր, երկնցած, թէյս կ՚առնեմ՝ այս պատկերներուն վրա՛յ խորհելով։

1904 (Արեւելք)

գինք մըն է տածը որմէ՝ հիճաղքեարին կ'անց-նու պէսթէնիկարով կը մերջացնէ. «Խաթէտինոէ-կէօյնի'ւմ մէրաիմ ատնա» որուն հեշտալուր թրթռա-ցումը ականջիս մէջ կը բղղայ՝ ընդհատումէն մերջ ինչ։ Ա՜ս այ միրաւոր կը հարցնեմ ինքզինքիս։

Դէմս պատուհանի մը ընդմէջէն կը նշմարուի աղ-ջկան մը գլուխը՝ գորգի թէզկեահին առջեւ. հէն-քին մանուածապատումը կ'երերակայ՝ հանկուշտի (հան-գոյց) մը նստած պահուն ու քրքիթին ձայնաւո-րումէ'ն առաջ՝ զմեյրին չեղփին փա փլանքը կը զարնէ աչքիս։ Մեքենակա'ն աշխատութի'ւն մը ջլատո՜ղ։

Երկու-խոստանի չինուած՝ երեք-երեք ձողիկներու աղուցումով վրանին երկնցուած ուրիշ ձողիկ մը օ-րուն վրայէն կախուա'ծ են ապուխտի փերթեր, երշի-կի տոպրակներ եւն.։ Միսին եղերը կը հալին կը գեղ-նին, կը կարմրին արեւին հուրքէն. ագռաւ մը վրա-նին թառելով կը կոցահարէ զանոնք, մինչեւ որ քա-միկը մրափող ծերուկը գաւազանը չարժէ։ Բուխե-րիկի պխակներ, առասանով իրարու կապուած, վրան ճերմակեղէն փռուած։

Դա երդիքին վրայ խումբ մը կիներ են բոլորուեր մաղել-ծուելու համար։ Աղուէնցուն ա-ներ է տան մարդը, սուղ ու կրակ մաղերու մէջ լեց-ուած ցորենը՝ մանուար կերպով մը կը շարժեն պը-տըտցնելով, որուն մէջտեղը կը հաւաքուի յարդի չի-ղեր ու հաւի կուտ կը թափի։ Անդին ուրիշ մը փայ-տէ փուռով մը կը ծուէ՝ քարը հողը զատելու հա-մար վեր վեր նետելով։ Ցարուքը տէփուրին մէջ կը կ'ուտակուի։ Խաղղըցուի համար պիտի պահուի։

Ուրիշ մըն ալ՝ հատերը կ'անցնէ մաղէն՝ ներքեւուքը՝ վրայուքէն զատելու համար։

Այս բանուորները մօտաւոր ազգականներ են. փոր մը հացի աշխատելէ աւելի պարտականութիւն կը կատարեն. չէ՞ մի որ փոխադարձ է։ Տան տէրը՝ կատարեալ հարկինք մը կուտայ առանց։

Խումբ մը կիներ ալ, երիկմարդերու ընկերակցութիւնով ե ր կ ա ն ք կը քաշեն՝ մանիներով։ Աղջիկ մը տուն–միայ. կարճուլիկ լեցունիկ, մոխրամած, պրկըները դուրս ցցուած, երկանք քարին վրայ նստեցնելով կը պտտցընէին բաղդը բանալու համար։

1904 «Արեւելք»



## ԵՐԴԻՔԻ ԶԲԱՂՈՒՄՆԵՐ

Մ. էֆ. Զուքասուզեն

Տուներ, որոնք Կիւրինը շրջապատող բարձրաբերձ լեռներէն փրթած, վար գլորած ժայռերու պատրանքը կը թողուն վրաս, դալարիքի մէջ մխրճած, սաղարթներով առկախուած։ Մէկ մասը լերանը ստորոտէն բարձրացած ինչուան գագաթը. միւս մասը՝ ծործորին մէջ փռուած, բլրակներու, ծմակներու վրայ կառուցուած։ Ծովէն՝ Ակը—մէկ ծայրէն միւսը—3 ժամուան հեռաւորութիւն։ Ձորին մէջէն անցնող, սողոսկող գետակ մը. քաղաքը երկուքի բաժանած է։ Գետէն զուգահեռաբար 100 մեթրի չափ հեռու ու վերօք առու մը կը խոխոջէ.

ակէն քալելով իր կապոյտի երիզը։ Անո՛ւշ, խմուելի՛ք ջուր, որուն գլխաւոր մէկ յատկութիւնն է մէջը կենդանի չ'ապրեցնելը։ Այս ջուրին մէջ ո՛չ ձուկ կայ, ո՛չ գորտ։ Ջախ–ձորի (ջախ ձոր) Կիւրինի սիրտը ակօսող առուն է աս։ Ջախ–Ջոր՝ Կիւրինի սիրտն է. ամենէն հայաշատ թաղը, լերանը ստորոտէն ինչուան գագաթը՝ Շուլըղը. հետեւաբար ամենէն օդաւորը։ Միւսը, տափաստան ծործորին մէջ փռուածը Շուղուլն է, խումբը միւս մանր թաղերուն. մինչդեռ Ջախ–Ջրնալ մայրն է քանի մը նրակ թաղերու։ Ուրիշ թաղերալ կան մասնաւոր անուններով, բայց կրնամ այս երկուքին մէջ հաշուել։

Եւրոպական տարազով կին՝ քիչ, աղջիկ՝ ոչ չատ։ Տարէց կիներ երթմըճով անթերի կը հագնին, հարսները՝ պարզ չըջազգեստ։ Նորելուկ հարսներ հազիւ սկսած գործածել փոթաւոր եւ ուռուցաւոր վէտվէտուն լաթեր։ Կիւրինցի կինը ո՛չ աղուոր է, ո՛չ տգեղ։ Ազուոր է եթէ այս բառը կ'որակէ սոսկ միսի գեղեցկութիւնը ունեցողները։ Կիւրինցի կիները մսեղ են, ուժեղ ու փորեղ, բայց, պոռոտ աղուորութիւն մը ունին, որ միայն կարծեմ Կիւրինցի քիմքի կը յարմարի։ Կարմիրը՝ կարմիր. սեւը՝ սեւ. կիսագոյն երբե՛ք։ Կիւրինցի կինը՝ բանուկ է. էրկանը՝ զօրավիգը։ տանը սիւնը։ Պարապ նստած կին մը չը տեսայ ես. ամենէն հարուստէն մինչեւ յետին Օղանը. կամ թութ ունի թեւքելիք (թօթուել) կամ միշմիշ ունի ճեղքելիք կամ լաքան (բուրդ թել) ունի մանելիք, քրմանով (փայտէ պտուտակ) եւ կամ էրկանը ճագարին մատուքան ունի լեցնելիք, պարապ չթողցնելու համար զինքը։ Հոս, միջանկեալաբար ըսենք թէ, Կիւրինցի

տյր մարդիկ երկու գլխաւոր զբաղում ունին, «ճագար» գործել, կամ լեռը երթալ խէժ, թիթիղէ հաւաքելու Ասոնց վրայ գրելիքներ ունիմ։

Աղջիկը կը նշանեն 14–20 տարիքին մէջ։ Մանչերը կ'ամուսնանան 17–25 ին մէջ։ Նշանածներ իրարու կրնան տեսնել, մանչը աղջկանը տունը երթալով, կը գիշերէ ալ հոն։ Սըվազի համար չա՛տ ամօթ է։ Ասոնք գլխաւոր գիծերն են ու նախաքանը՝ յետագային։

* * *

Առտուն կանուխ, Ագամամթնիկին (այգուն) արեւէն առաջ կ'ելլեն Կիւրինցիները. առաջ՝ կիները. վերջը՝ այրերը։ Մայիսէն օգոստոս իրենց ամենէն մեծ գործը, առտուն թութ թեւքելն է. շաբաթը երկու օր, անխափան։ Առաւօտուն անկողինէն չելած, առտուան զովուկ ու պաղչկուն օդին առթած հեշտալի քունը կ'ընդհատի տերեւներու խարշափէն, սաղարթներու իրարու քսումէն։ Տանը տղամարդը ծառին վրան է. սիլլիմ մը (ձեռքի սանդուխ) կրթնցուցած ծառին բունին. վեր է ելած բունէն ու բարձրի ճիւղերը ճանկրթելով, մագլցելով ինչուան գագաթը բարձրացած է, ու իր ուժով եւ կարչնեղ մկաններուն պիր դալարումովը պըլլուած ծառին հաստկեկ մէկ ճիւղին կը չարժըռկէ հըրմըշտկելով ու մերթ ալ ոտքովը հարուածներ տալով ծառին, որուն, մեղրամորճ, մարգարտաշար ու մարգարտափայլ չարաններր կը թափին. կը վաթին կարկուտի թփրտուքով դալար ոռոգուած ու մաքրուած մարգաստանին կանանչութեան գիրկը։

Սենեակիս դուռը ալ կ՚առնուի. տատուն կանուխ. տան-տէրն է որ թութ ուտելու կը հրաւիրէ զիս. Թութ թափուած ատեն մարդ հրաւիրել՝ բաւական պատիւ մը ընել ըսել է. կ՚երթամ։ Անհամար աղջնակներ, աղջիկներ ու հարսներ, տղաքներ ալ մօրերնուն քղանցքին փակած բկչելով մանտրտիկ ոտիկներնուն ու թաթիկներնուն տակ ճզմելով թութերը Ս.մոն մը ձեռքերնուն մէջ՝ կը հաւաքեն թութը, մերթ ալ նետելով բերաններնին։ Իրար գլելու, իրարմէ շատ հաւաքելու խուճապ մը, մարմաջ մը կայ վրանին։ Կկզած են, ու կարկճելով (հաւկիթ ածած ատեն հաւին հանած աղմուկը) նախորժելի դաշնաւորութեամբ համեմելով անհամ խօսակցութիւններին կ՚աշխատին։

Կը կերկնան (աղաչել) որ լուսանկարնին առնեմ ատանկ հաւաքուած. կը խոստանամ։ Շատ անգամ ալ ծառերուն տակը կը փռեն վ ա լ ա ն ե ր, կարպետներ, որպէս զի հաւաքելու աշխատութիւննին թեթեւնայ։ Արեւն աղուոր մը հասարելէ, տաքնալէ յետոյ կը լրացնեն գործերնին ու տան-տիրուհին կը բոցուացնէ օճախը, երկար ու թարմ գիերով ճարճատումով, վրան՝ նստեցուցած մեծկակ հառանի (մեծ խալկին—ղազան) որուն մէջ լեցուցած են ամբողջ աշխատութիւններուն արդիւնքը, թութը։։ Տեսակ մը մեղքացում կուգայ վրաս. չեմ ուզեր որ այդ անուշիկ հատիկները ոչնչանան կրակին վրայ։ Մամիկիս դժոխքին վրայ պատմածը միտքս կուգայ. մե՛ղք։ Եփելէ յետոյ կը քամեն մէշմէշներու (թութ քամելիք տեղ) մէջ ու տափամաններու մէջ թափելով կը հանեն տ է ն ե ր ը, մնացած չոգին չորցնելու արեւին տաքցնող-եփո՛ղ ճառագայթներուն տակ։ Տուփ պիտի ըլլայ, իսկ քա-

մուքէն մնացած դիրտը չ ի լ ֆ ը․ կլոր կլոր գինդեր շինելով կը չորցնեն։ Ռուփը՝ իրենց, չիլֆը անասուններուն ձմրան պաշար։ Թութէն մաս մըն ալ տախտակի մը վրայ կը չորցնեն։ Թութի գործը լրացուցած են ա՛լ եւս ու կը սկսին լուացուիլ՝ հ ո ւ ր ո ւ ք ի (օճառի մանր կտոր) մը կտոր մէջը ձգուած՝ բուրդ տոպրակ մը քսելով ձեռքերնին։ Ճշմարի՛տ տնտեսագիտուհիներ։

* * *

Թութը չհասած՝ միշմիշը հասած է արդէն։ Այլ եւս ուշն ուրուշը կը դարձնէ միշմիշին։ Դեղին սաթի փայլով ու շաքարի համով պտուղէն ինչե՛ր չինել կը պատրաստուի Գիւրինցի կինը։ Ամենէն առաջ երկուքի պիտի ճեղքէ, երկ-երկուք պիտի շարէ արեւին տակ։ Կուտը կամէջ շինելով կը ծախէ։ Արեւին տակ կը փոթփոթին, կը կնծին, կը պլլուին եւ կը գոգաւորուին մինչեւ որ խ ո խ ո ւ ա ըլլան (չոփչոր) մինչեւ որ դեղին անուշ գոյներուն տեղ արեւը տայ պղինձի անփայլ գոյն մը․ մինչեւ որ խ ա ր կ ի ն, խ ա ն ղ ր ի ն։ Երկու երեք օր փռածը հողէ ցամքած, եղին մէջ տապկելով ք ո լ ո ր ը իր այնչափ սիրած մէկ կերակուրը պիտի պատրաստէ։ Մաս մըն ալ առանց ճղքելու կը ցանցնեն տանիքին վրայ կլոր մլոր․ Ասոնք ալ կը փոթփոթին, իրենց կուսութիւնը կորսնցուցած պառաւցած աղջիկներու դէմքերուն նման խորշոմներ կ'ակօսուին միապաղաղ երեսնուն վրայ, կը սմքին կը գունատին․ ա՛լ տանը մէկ մառանը պահուելու սահ-

մանած են, մինչեւ որ գործածութեան հրաւիրուին։ Սպրցուն՚ք են ասոնք։ Զմրան պաշար։ Մէկ մասն ալ քամելով հիւթ պիտի հանեն ղըժ–մէմէտ չինելու։ Մէկիկը հուփին մէջ ձըգելով ռէչէլ պիտի պատրաստեն եւայլն։

* * *

Ու յաջորդաբար կը հասնին սալորը, խնձորը, տանձը, խաղողը, ընկոյզը։ Այս վերջիններէն շատ չկայ։ Միայն սալորին մէկ տեսակը, Թ ո ղ լ ո ւ ն կ՚ըսեն Կիւրինցիք թէ ա՛լ ուրիշ տեղ չի գտնուիր։ Համեղ պտուղ մըն է Թ ո ղ լ ո ւ ն. իր անունը առած է, բարակ փոշիի նուրբ խաւով մը օժտուած, մշուշի թաթխուած ըլլալէն, ինչ որ տեսակ մը հրապուրանք կուտայ իրեն։

Ոչ քաղցր է ոչ թթու. ու կ՚ըսեն թէ միայն այս սալորը կայ որմէ շատ ուտելով ու վրայէն ջուր խմելով չի վնասուիր մարդ։ Սալորին ալ չորը կը պատրաստեն, տէները փռելով, ճերմակ կաւծեփ տանիքներու վրայ։ Կիւրինի մէջ կիրով տուն քիչ կայ, բայց ճերմակ հող մը ունի բաւական անուշ գոյնով. ուր կը խաղայ բարձրաբերձ ամպամերձ ընկոյզենիներու վայրահակ սաղարթներուն ստուերները, նախշուն հմայքով մը. ահա այդ տանիքը կուպրագոյն ներկուած է սեւ սալորի առատ ու խիտ փռուածքէն։

Քիչ մը անդին վարունգներ, կեղեւուած ու փռուած շարուած են քով քովի։

Տանը էծէն. կամ վարժ կին մը, Ա մ ե ր ի ք ե ն վալաններու վրայ կը թափէ հեղուկ մը, ու ուրիշ կին մը

ծեփիչի մը հաւասարաւոր քսումով կը տարածէ այս սիրտ խառնող դեղնագոյն հեղուկը։ Ուրիշ աղջիկ մըն ալ նշիկներով կը կիտաւորէ զայն։ Նիշէն կը պատրաստեն, ան համեղ՝ անուշ ու թափանցիկ պաստեղը ու ապա տառասաներու վրայ կը կախեն։ Այս ամէնը կը կատարեն, հոն տանիքին վրայ․ ա՛ս է իրենց բակը։ Գոտեձաւոր արեւին անպակաս ըլլալն է։ Տանիքին վրայ է նաեւ իրենց ծաղկանոցը։ Բարձրիկէկ ածու մը չինուած կոլլայ մէջ, ուր կը ցանեն Կիւրինցի աղջիկները իրենց սիրելի ՌԷՀԱՀԸ։ Ասոր անուշաբոյր տերեւիկները սիրոյ խորհրդանշան են։ Տանը աղջկանը նկարագիրը իր բուսցուցած ռէհանին որակէն կը գուշակուի։ Տան աղջիկները՝ նշանածները մանաւանդ իրեն այցելութեան եկող նշանածին առկէ փունջ մը պիտի տայ, որ իր աշխատանքին արդիւնքն է, իր քըրտինքովը ոռոգած, մատիկներո՛վը խնամած է։ Այս պահուս, ձմրա՛ն մէջ, այդ ռէհանէն չորցած տերեւիկներ՛ը ունիմ գրասեղանիս վրայ, որոնք իրենց անուշի՛կ տիրուհիները կը մարմնաւորեն երեւակայութեանս մէջ։

Պարտէզներու գիրգ կանանչութեանը վրայ, հովի փչումներէ թափած անհամար տհաս խէցիկներ (թափած, տըհաս սալորներ) ու ինկած զայտած խնձորներ, որոնք համեղ կ'ըլլան, կը խմչտկուին իրարու ձեռքէ ու միջուկը հանելու չապաստած, չկեղուած կը խածըռտեն։ Աղուոր խնձորէն զատ պիտի չինեն, ու անուշով եփելով ռէչէլ պիտի պատրաստեն։

Անուշիկ զբաղումներ, իրա՛ւ որ։

1903 (Արեւելք)



## ԷՈՒՋԻ ՍԷ՛Ր՝ ԷՈՒՋԻ՝ ԲԱՐԻ՛



### Ա.

*Ակիւլէնէին*

Օխտը—ծակէն աչք—հիլունը՝ կտրուած ուսին քօղանքը այլազան բժժանքներով՝ չէի՛ն օգտեր կարծես. գրպաններուն մէջ ալ թխեր էին սեւ գնտիկի խաչխաչի խայծղանով թրուած ծրարներ, սխտորի պըճեղներ ու մկան ակռաներ. ամա՛ն աչք կայ չար՝ աչք կայ բարի՛։

Պտոյտէն վերադարձին ամէն կերժկոուքին. անխուսափելի կերպով պատցնէին պիտի իր չուրջը դանակի մը փայլփլուն չեղիը. պըկունքն մրթմրթումներով, երկա՛ր երկար կերժկոուքներով գերցկըրտոուքներով. ու ապա դանակին վրայ թքնել տալով, դրանը եռեւը մխէին պիտի՝ աչք ընողին ա՛չքը «փըթթի»ներով։ Աչքերնուն լոյսն էր։ Ի՛նչպէս չըլլա՛ր։ Մարգուկին քամակը կքեր. աչքերը ճերմկե՛ր էին. իսկ կնկանը վարսին մէջ մուշի ծիղեր պայղա՛լ էին սկսեր։ Կեա՛նք ալ չէր անցուցածնին, իրա՛ւ, կերածկերածնին՝ եռեւնին չի կերածնին՝ առջեւնին, բայց, քան-քանհինգ տարուան աս կտուց կտուցի կեանքէն ա՛լ տաղտկացեր էին, միօրինա՛կ։ Սրբնակներ ու Սրբնդունէր բաւակա՛ն այցելեր էին։ Դուր ու դարման չտայլուա՛ծ էր՝ ամէն իժիր. կարդալիք՝ ամէ՛ն խելընհասէ ու չէր բացուեր ամլութիւնը՝ բեղմնաւորութեան առջեւ։ Անժառանգները, դիտուած է, չատ հասսէր են ու ժլատ։ Ուտող-թափողի չգոյութիւնէն աւելցեր էր հարստութիւնը։ Հարստութեան մարմաջը կղթեր էր

գինքը կեանքին։ Կեանքն օղակուած էր նիւթին հետ։ Աս տենչանք իր ի բնէ ստորին խմորին տուեր էր սողոսկող, չար ակնկալած անձին ձեռուըները լզելու կերպարանք մը։ Ամէն քսութիւն, կեղծաւորութիւն որդեգրեր էր հարստութեան բարձունքին վերելակելու։

Կեանքը այլազան խայծեր ունի արդէն։ Կի՛ը սակայն, չէր դադրեցուցեր իր պայքարումը։ Իր անյուսութեան մէջ կառչեր էր ամէն չիւղի, ալիքի, փրփուրի։ Ամենքն ալ փորձառական կեանքէ առնուած դեպքերով ու պատուէրներով օրօրեր էին իր յոյսը։ Մէկը յանձնարարեր էր խաչած չողգամի չոգիին վրայ նստիլ, ուրիշ մը ծ ա հ ր ի ն ի ոգին գործածել, ևն.։

Ենթադրութիւնը ընդունի կամ ոչ, ամլութիւնը չրջաններ ունի։ Կ'ըսեր կան որ 3-4-10 տարուան ամլութեան չրջանը բոլորելէ վերջ կը բեղմնաւորին։ Երժանքներու, Սրբնդրուներու, դուռ ու դարմաններուն կամ այս չրջանին լրացումին վերադրուի թէ ոչ, յարգանդին մէջ զգացեր էր առաջին չարժումը. Սաղմի՛ն։ Վերջապէս ունեցեր էր մանչ մը, որուն աւետիքը տանողը զարդօսկի մը ստացաւ հօրմէն։ Մարդուկն հրրճուեր էր, այս անծանօթ ու աններթական զգացումէն։ Հայրս տո՛ւն բերեր ըսեր ու հօրն անունը դրեր էր անոր, Աղաճա՛ն։ Հօգիս առաջին առնէ մանչուկիս զուրգա՛ն ըլլամ սուրբ զօրութեանը Փրկչի. արցունքս սրբող մը, օճախս վառող մը պարգեւեց ինծի։ Ամէն ժամու՝ պատարագ էր խոստացեր ու ամէն վանքի մէյմէկ հորթ։ Իսկ հայրը, «ողջ ըլլայ, ափ մը հող նետող աչքիս», կը յանկերգէր։ հինգ-վեց տարեկանն ա՛լ թեւընկեր մը կը նկատէր։ Անոյշիւմ չորերու մէջ ծրարելով, փաթթելով կը պտտցնէր հետը. դոյներուն կա-

պօյտը նախընտրելով․ կապո՛յտը արդեօ՞ք է չա՛րնա-գարի՛ն։ Իրեն հանդիպող աղա բարեկամներ կը փըս-փսային «որձ էշը քուռակով չի պտըտի՛ր»։ Աղաներու-ամէն կատակի կը ներէր անոնց քֆրանքն օրհնու-թիւն էր իրեն համար, ու աղաները սովորաբար, սի-րածնուն կը հայհոյե՜ն․ չէ՞ մի որ «կաշեգործը սիրած կաշին կը ծեծէ՛»։(*)

Դպրատունն ի՞նչ ընէին․ ուսումը, կը սխմէ կը ճզմէ մանուկը․ ուէրանէր վարդապետ չընէին միտքը։ Իսկ տղան փողոցի կեանքին վարժուած, վէգ խաղալ-չուն քիշքիշցնելով, դպրոցի տղաք հալածելով կան-ցընէր ժամանակը։ Ճաշի ատեն միայն, հօրը խանութը կերթար՝ լոլիկներով խորովածին մասնակցելու։ Թա-ղին մէջ ո՞վ կ'մտէր՝ «աչքիդ վրայ ո՛ւնք կայ» ըսել. Թաղեցիներն անգամ կը ներէին անոր չարաճճիու-թիւններուն․ չունք կը ծեծեն՝ տիրոջը խաթրը կայ-է՛ն անմեղը գրաստներուն՝ Թաղին շուները ծեծել ու փախիլն էր։ Հայրը՝ գործունէութեան նոր մղում մըն-էր տուեր՝ ամէն չարաճճիութիւններուն մէջ մխրճե-լով հարստութիւնը։ Գեղ առնել՝ սա նա գեղացիին արտերը պատանդ տալով, շահով դրամ տալ, եւն։ Սողոսկող բնաւորութիւնը՝ աղաները կը սիրաշահէր, որք կը շահեցնէին իրեն․ ինք, ամէն օր, մէյմէկ նոր կատակ ճարեր պիտի զանոնք զուարճացնելու։ Մու-քերա՛ն ալ էր․ ցանկոտ, աչքը սրտին մօտ, ինչպէս են, կարճերը սովորաբար։ Ասպրանքնին՝ հանդստաւէ՛ր. կերպերնին խումբերնին՝ մէկը չունէր․ միասութիւնով, կծծութիւնով օղակուած՝ ամէն բերան։ Ասպրցուն. է-ւելէւելօք։ Սղոց անգամ չէին պահեր տուներնին․․․ ակռային համար։ Տուներնին ալ ածին լեղին կը գըտ-

նուէր։ Զարմա՛նք. ամէ՛ն տարի խաղող կը քամէր-հարկ-հարկի՛նք ալ չունէր. միայն աղաները բացառութիւն էին, որոնք իր տանը ու իր պատիւը աւելցնելու գիտումով կը գինջանէին գինին ծամելու։(*) Տղանփորեզ հազարնոցներ կը չփէր երբեմն մէկ-երկու բարեկամի հետ կնճելու։ Ա՛սչափ էր տղուն չռայլութիւնը։ Ամէն տարուան գինիէն հազարնոցներու մէջ լեցնել ու թուագրելով չորսէ դարակները՝ բաղցանքն էր՝ տղուն պսակը պագնելու օրը բանալու խոստումով...։

## Բ.

Բերնակը խուփ՝ հա՛րս մը բերած էինք Թաղերնիս Մկր էմմուն տղուն։ Օր մ'օրանց չլսեցինք ձանը, ու չտեսանք գինքը փողոցին դուռը, պեմանը վրայ։ Հարսնութեան քառասունքէն չելած, հարսնքաղնիքէն հազիւ կատարած՝ մատներուն հինան ալ չորցուա՛ծ դեռ՝ Փէր կտեր էր ու սկսեր էր մասուրա լեցնել, մշտուտ հինել, ու մանուփոխ ալ ընել՝ քուլկընելով։ Շահածուկ հարսնուկ մըն էր։ Սեւը ներս՝ ճերմակը դուրս ապրող ընտանիք մըն էին անոնք։

Երկու երեք տարի քշած չքշած այս անդորր կեանքը, Մկր էմմուն տղան պանդխտութեան գնաց, ծերունի մօրկանը վստահած՝ քիթի արունի պէս կարմրուկ հարսը, վայը ձունը տուինք։ Սի՛րտ կայ՝ սի՛րտ ալ կայ․ Յուղարկաւորել եկող՝ գուռ դրացի կիներ՝ լացին ալ՝ կնկանը համար։ Կնիկը՝ նորածին մանչուկը գիրկը՝ չէր ժտեր բացէն յալ, ու արցունքները կուլ կուտար դրանը բերանը կեցած։ Նորածնին երեսը պագնելն ու լացկըտելով կարքը նեատուին աչքին ունքի չափ-

ջուեց։ Տարինե՛ր անցան։ Նորէն աշխատութիւնով կը վանէր մտմտուքը։ Երկնէն քիչ չատ դրամ կուգար՝ բայց աչքի՞ն կ'երեւար։ Օր արեւ չտեսած՝ կէս որբեւարի կեանքը՝ կը կսկծացնէր սիրտը։ Տանը հոգը՝ հեռուի ազգականներու վրայ էր մնացած։ Աստուած՝ մէկ ձեռքդ մէկալէդ կարօտ չթողո՛ւ, էրկրի ձեռքով փո՛ւչ բռնես. դրամը կերթար բայց ուզածը չէր գընուեր։ Ամերիկա էր։ Աստուած՝ լեռը նայի՝ ձի՛ւնը ա՛ն կէօրէ կուտայ, բայց. ամերիկացի գործարանատէրը մեծ բեռ դրեր էր խեղճին քամակին, ու պանդխտութիւնով մաշած էութիւնը ճկեր էր եւ հիւանդութիւնը բռներ էր մէջը։ Իրա՛ւ, քանի մը կարմրուկ ֆրանքներ էր. բայց ան ալ ծախսուեր էր հիւանդութեանը ու պուրուկ մը երկննալու հող գնելու, թաղմանը ծախսելու։ Քանի մը ոսկիներ ալ՝ սըւոր նըւոր վրայ։ Մեռնողին ինքն ալ՝ հետը կը մեռնի։ Լացը գըքին, ղօլեցին ալ ղինքը՝ ամէն մաղին՝ մէյմէկ դա՛վք դնելով։ Ժա՛մ ալ ըսել տուին ու ազարաղնիքն ալ եղաւ։ Ալ իրա՛ւ ճշմարիտ որբեւարիի սեւ լաչակներով խուխիկւորած քաշուեցաւ տանը ներսը. քիչ մը սըւարցեր էր այս անգամ, աղջիկնութեան խպնանք մը եկաւ վրան։ Ձեռքն ուզող՝ չատե՛ր եղան, մերժե՛ց. ա՛լ քերթեր փերթեր՝ աչքի՛ն էր բերեր՝ տանձն հասեր՝ խնձորն կարմրեր էր. ինչո՞ւ մէկհատիկին խորթ հայր ցուցնէր. հասեր բուսեր էր մանչը, ա որ դէմ կը քերեր ա՛լ։ Դարբին Սարգիսենց քով էր։ Վարպետը աս նահապետական գործին միամտո՛ւկ առաջնապանը՝ անվերապահօրէն սորվեցուցեր էր արհեստին ամեն ծակուծուկը։ «Թող երթայ օխտը պորտը ողորմիս հանէ», ինչպէս ինք կը հանէր իր վարպետին, անոր համար

շաբաթ իրիկունները. խանութին մէջ իսկ «Հայր մեր եր-կինք» մըն ալ ըսելու պաշտելի աւանդութիւնով: «Փի-քաց-Վարպետաց» քանի մը տարի ետքը վարպետ գլուխ ալ եղաւ. խանութին մէջ յաճախորդները ճանճի պէս կը բզզայի՛ն: Իր էռացուցած երկաթին կտո՞րն յայտնի չէր ըլլար: Իր ջրած կացինը քարին տայիր՝ ետ չէր դառնար. լիրով քեռ (քեւեռ) կ'կըյէր. մօրկանը միրուը ե՛ղ կը կապէր: Հատիկ մը տուաւ՝ քարի պա՛ւղ հասաւ: Ասուած հոգիս առջեւն առնէ՛: Ալ մէկ բաղ ձանքը մնաց. պատիկը պագնի՛ր:

Հրեշտակապետի ուխտին, Նոյեմբերի թուխ քող-քը կը վանէր հովը որ կը մամրար սաղարթները խա-ծատելով: Արեւն ամպեղէն վերմակը մէկ կողմ էր հրեր: Պօչէն ետք՝ քառասուն օր Փուխէրիկի ամառ կայ արդէն: Սրբնակեր ու որբնդուռներ խճողուեր էին ուխ-տաւորներով: Երկրագործ ընտանիքներով, որոնք ա՛լ լրացուցած են աշխատութիւնին: Լուսաղբերներու վրայ թառած որբո՛ւկ քարտիններու ներքեւ մուխի ծուէններ կը ծառանան: Մկր էմմուն թառն ալ մօրկանը հետ ժուռ գալ էր ըեր: Խանրած սաղարթներու քոցոնքին վրայ շարուած չիւղերու ու թրիքներու քոցին շուրջը կկզեր էին:

—Ա՛լ մե՛ղքցիր ինծի, եավրո՛ւս, հեւքս հեւքիս չի հասնի՛ր. մէկ ոտքս անդին մէկալս աղին. ասոր կամ վաղը չիկամ. հարս մը բերենք. տունը չէնցը-նենք...: Աղուոր, աղէկուկ աղջիկ. ես քեզի գէշը չե՛մ կամենար. ի՞նչ կ'ըլլոյ հեղ մը դուն ալ նայէ. քերնիդ ջրիրը կ'որթոյ ի՛նչ աղջիկ: Մայրը, աղան մինա՛կ երջանկացնելու իտէալէն զապանակուած ամէն տուն փնտռեր էր զաւկին արժանի հարսնցու մը: Ի՛նչ

ընէր հարստութիւնը. մեղքը չէ՞ր միխառմի՛ն։ «մայր ստանտախտայ, գեւ ղարչմտա՛յ» Թող մարդ մարդու զաւակ ըլլայ ու աղքա՛տ։ Իր տղան ալ աղքատ չէ՞ր. հիմա իլլիք էւէյօք ունի։ Ջաւկի՛ն ալ ինչքին ալ խայիրլին ըլլայ։ Հաւնեցաւ վերջապէս։ Ոուս նայինք չքնաղ խօմինք, աղուոր էր աղջիկը։ Հարուստներու արժանի. բայց աղքատներուն երեսը պա՛ղ կ'ըլլայ։ Ո՛չ ոք անդրադարձեր էր գուղձերու տակ թաքուն աս մանուչակի՛ն։

Քանի մը ազգական, բարեկամ եւ արհեստակից, արձարանին անկիւնը խօսքն առեր, հայր մերն ըսեր լրացուցեր էին։ Կիրակին նշանն ալ ղրկեր էին գթթէնելածին չափով, շաքարը լիրերով, աղուոր քփուկ նըշան մը։ Մօրն աչքն լուսող լուսողի։ Աղջկան գովեստըն ամէն եկողէ։ Պարկեշտ, անարատ. տունը գլորեցաւ կափարիչը գտաւ, քեզի յարմար։ Հարսնցու-բաղնիքն ալ ըրին «Մերկութեան հմայքը» քննասիրելու։ Աչք համակ պէտք էր վրան նայելու, քիթը բերանը մըլլտած։ Տղան ալ կղթուե՛ր էր աս գեղեցկութենէն։ Գաղտուկէն կ'երթար նշանածը տեսնելու՝ հազար դժուարութիւնով։ Նշանածը տեսնե՞լ, ի՞նչ ամօթ. մեղդըրանքի նիւթ՝ քաղքըցիին։ Ամուսնութեան խօսքն[illegible]ալ առեր էին։ Ցքնակին, քանզի, տղուն գործերը այդ պահուն կ'թոյլատրէին շունչ առնել տալ իրեն։ Զիւնն երկրագործին երթեւեկը կ'խափանէր։

Տղան գործունէութեանը նոր մղում մըն էր տուած։ Առնելիքներ ալ գանձեր էր աս պատճառով։ Գեղերէն ակերով եղ, մեղր ալ նուէր էր առացեր։ Կարգուողին ու նոր զաւուողին յաջողութիւնը կրկնակ կ'ըլլայ։ Աս տարին շատ աւելի յաջող էր եղեր առու-

տուրը։ Կարգուելու չափ ու չափ աւելի դեղին իրարեր էր ճակտին քրտինքովը։ Անկողինն ալ լեցուցեր էր մարը։ Պէպէքին «Մեռոնի լաթերն» ալ պատրաստեր էր։ Օրերը կ'համրէին ա՛լ։

Գ.

Հարուստին ազգականները անհամար կ'ըլլան։ Օ խ տ ն – օ տ ա ր ն անգամ ձեռքին կուտայ՝ երբ ունեւորի մը տղան[illegible]անուի։ «Մե՞ր Ք...ենց տղան. ազ-քա՛րն. մ ե ր ը՝ անխուսափելի սերտութիւն, ազգականութիւն կ՚նշանակէ։

Երկուշաբթի. Չորեքշաբթի օրերը, ա ր ե ւ ա՛ ճ ո ւ ն խումբ մը կին՝ պ ի ւ ր ի ւ կ–կ օ շ ի կ եղած՝ թաղէ թաղ կ'պտըտկի՝ մէկ հատիկնուն յ ա ր մ ա ր աղջիկ մը ժմը-նեցնելու։ Աղջիկ՝ շա՛տ, բայց, իրենց յարմար ըլլար. քէշէրնին, քէշէրնուն յարմարէր։ Մա՛րդ–մարդու զաւակ ըլլար չըլլար, կոթը, մակարդն ի՛նչ ուզէր ըլլար, տուն քակող ալ՝ հոգը չէր, միայն յարմարէր իրենց տանը, հարուստ ըլլար։ Մէկալ էական յատկութիւնները աղքատները, միջակները նկատի կ'առնեն, քիչ մ'ալ իբր մխիթարութիւն՝ հարուստէ մերժուա՛ծ սերտերնուն։ Իրենք՝ ո՛ր դուռ զարնեն՝ կ'բացուի՛...։ Աս մարը որ մէկ հատիկին Աղաճանին, գերին էր, չէր խորհեր տղուն գեղեցիկ աղջիկ մը ճարել. ի՞նչ ունին, քիթերնին բերըննին տե՛ղը. ալ ի՞նչ ուզէ։ Ջէր ըսեր թէ «հարսը՝ սոխ, մարըն՝ սխտոր, տիլպէր չէքէր ո՛վ ելայ»։ Ալ հիմա բերնակը բացուէր՝ սա նա հարուստ տունը կ'գովէր. տանց անունո՛վը կ'պարծենար։ Աղջիկ–տեսի պահուն՝ դէմն ելած կնկան կ'մուհալէր։ Քաղ-

քընիս աղջիկ չըկա՛յ, քուրուկ, աղուոր աղէկուկ աղջիկ շատ, իմ տաան չեն յարմարիր. քիչ մը բէշա բէշին իբա՛րկելու է։ Աղջիկ մը կայ, ընտրիկ. բայց, արունջուրերնին կը քաշուի. աղքա՛տ. մէկիկս օր արե՛ւ տեսնէ։ Աներանց տուն ունենայ, էօջնգարձ տանին, պատառ մը հացերնին ուտելու քիւչիւմ չըքաշէ։ Քաղաքը տո՛ւն չթողուցի. գտեցի աղջիկ՝ Աստուած չընէ որ տեսնեմ, միջակներուն աղջիկներն ալ՝ թավլիքաներուն մէջ, խալիին առջեւ հալեր մաշե՛ր են. մոխիր մոճիր են դարձեր, երեսնին գոյն ըսածը չըկա՛յ, հէմ՝ խօսքս քե՛զ մնայ՝ չարերով, գրերով պատուա՛ծ, մինչեւ եաքը հորը ծեծած, մօրը վռնտած տղաքներ՝ աղջիկներուն հետ կո՛ւշտ-կշտի են, ա՛ս ալ մեր բախտէնէր։

—Բուկ ալ բնութիւնդ չորնա՛յ. կ՚ըսէր ունկնդիրը. տանձը կո՛թ ունի, խնձորը քիթ. կարճ-երկան յարմարցո՛ւր. մէխսումիդ ալ մեղք է. քիչ մը քենէ վեր չըլլայ վա՛ր ըլլայ. ի՞նչ կայ, աղքատն ալ Աստուծու ստեղծած ծառան չէ՞, փառք Բարերարին ձեր երեսէն։ Որբուկ մը, աղքատ մ՚ալ օր արեւ թող տեսնէ, վարձք մ՚ալ առ կ՚ըլլայ։ Ես խօսակցութիւնը շարունակարար։ Մտքէն անգամ չէր անցըներ թէ նայինք իր հաւնածը իրեն տայի՞ն պիտի։ Հարուստին տղուն աղջիկ կ՚մերժուի՞. մանաւանդ մինա՛կ տուն, ներ, տալ չըկայ, աղջիկնին ազատ կեանք կ՚ունենայ, կերածնին առջեւնին, չկերածնին ետեւնին, ալ ի՞նչ ուզեն. կեսուրն ըսես տղուն վրայ հոգի կուտայ։ Սո՛ւտ ալ չէր։ Որո՛ւ հոգ թէ տղան բանի չէր գար։ Հօ՛ր վաստակ տաքուկ անակ, հօրը կանակը ծեծէր, դրամը կ՚ուտէր, աղջող կար փախչող չկար։ Հօրը վաստակը

որո՞ւն էր արդէն։ Եւ սինլքոր Աղաճանը՝ գոլողներ ալ ունեցաւ։ Հօրը ոսկիներէն չլմորած աչքեր, տա՛րփուղանքի ձրի միջնորդներ էին։ Մանչը․ ա լ ո վ տունէ տուն կ'տանէին աղջիկ հանեցնելու։ Շաբաթ օր մը հանդպեր էր աղջկան մը դուռը ուռազած-չփած պահուն թեւը, որունքը ոտթուած, որոնց փղոսկր ողորկութեանը վրայ արեւին նշոյլը զանազններ կ'կածկլտացընէր։ Նուշի աչքերուն մէջ երկինքը կ'պրիսմակուէր։ Հմայուեր, գերուեր էր անկէ։ Ա՜ս ի՛նչ գեղեցկութիւն․․․։ Աղաճանին մարը հարցուց հասկցաւ ու գըտաւ վերջապէս՝ ժամկոչին աղջիկն էր․ Գոհարը բայց․․․ նշանուա՛ծ։ Տղուն սէրն ու աղջկան աղուորութիւնը վանեցին իր հարուստ հարսնցու ճարելու ըղձանքը։ Նախապաշարումն ալ պարզուեցաւ։

—Թո՛ղ նշանուած ըլլայ տղա՛ս, ըսեր էր, երեկ անոր տուին այսօր ալ քեզի կուտան ի՛նչ կայ, նշանը պսակ չէ՛, մանչն ալ գարբինի մը կտոր․ խօսքս խօսք, սա աղջիկը քեզի առնեմ պիտի։ Աղքատ հարուստ, մեղք վարձք ալ նկատի չէր առներ։ Մէկ-հատիկը թող հաւնէր իր բաղձանքին՝ անոր գալիք չարիքը՝ իրեն թող գար, ի՞նչ կայ, սա ինչը նա ինչն ալ եա եղածներ չե՞ն․ ո՞ր մէկը ժառանգ չէ առած, թերեւս նա ս ի պ ն ի ն սա էր։ Զետաց—ներքեւ կարգադրեց, աղջըկան միտքն ալ գողնալ տուաւ։ Ջուխտ մը խօսքը բժժանք մըն է՝ գաւառացի աղջկան համար, ու նշանի ոսկին լաչակի մը պոչը ծրարել տալով՝ եա ղրկել էր տուեր՝ ան կընկին չի ձանձնած խնդիրը․ Հոգեբանին թէ անդին պարկեշտ մար ու տղայ մը՝ արցունք թափէին սա եա ղրկուած նշանին վրայ․․․։ Խե՛ղճ, որբեւարին՝ խնամուն վրայ վազեց.—

—Աս ի՛նչ ձուն բերիր գլխուս, ես յառ նամուս չունի՞մ։ Թափեր, թափթփեր եմ։ Կարծես սիրտը կը փշփշցնես. ի՞նչ կայ, լաւծ մ'ունի՞ս. մեղք ունի։ Մէկու տէր, գերու տէր, ունենաս որ գիտնա՛ս։

Ու աղջկանը մայրը, աներեսաբար պատասխաներ էր իրեն.—

--Չէ՛, հազա՛ր՝ մեղայ, բան մ'ըսիմ՝ բերա՛նս կ'ծռի՛. քայց. Նասիպդ ու՛րիշ տունէ հարցուր. ու չուանին վը-րայ, այուր փռել էր սկսեր։ Բացայայտ էր. եղլին՝ էր գտեր, ն՛ղլի էր՝ չո՛ւնը խլեց։ Աղքատը արհամարհող զգացումներ բնրնած՝ են սա նէվ-քէսէներուն, հա-քուստներուն մէջ։ Ո՛չ ոք կ'ժտի ստնձգութիւն ընել իրանց իրաւունքին. իրենք՝ կ'զրկեն աղքատը։ Աղ-քատն ալ մա՞րդ է, իրաւո-նք ունի։ Աղջիկ՝ չա՛ռ. Թող ուրիշը առնէ, ասի՝ իրե՛նց կը վայլէ, իրե՛նց տանը։

—Ա՛խ. Աստուած հոգիս առնէր՝ մէկ հատիկ որ-դուկիս լալը չի ցնէ՛ր ինծի։ Վերը Աստուած մը կայ, խնամի՛ս, ըսեր էր դուրս ելլելու պահուն ան՝ո՛ր կը յանձնեմ. ան կը հանէ՛ վրէժս։ Աղջիկդ ժամուն—օտան ա՛լ բերել չեմ տար, ընողին չի՛ մնար. իմ բախտս չոր-նայ, տղաս բախտ ունենար հայրը չէր մեռներ։ Հե-տըզհետէ սիրտը կսկծալով աւելցուցեր էր՝—. Չի վայլէ, չի վայլեցնէ. ժառա՛նգ չառնէ. սիրականը աղջին առնէ, քեր ու դուռը քաշե՛ր էր։ Գոհարին մայրը կը մրթմը-թար՝ աղջիկը մխիթարելով։—Ջո՛ւր անէծքը՝ ղո՛ւր տիրուն։ Ջո՞ւր անէծք էր։ Տեսնել կարծի մը սրտին աւերակութիլը. արհեստաւորի մը, որ, մագլցելով սա-տիճանի էր բարձրացեր. գետնէն տուն էր եղեր ու մօրկանը սէրովը տապկուած ապրեր ու ապրեցուցե՛ր

էր։ Կեանքին մէջ խորհած անգամ չէր իրմէն վարի մը զրկանք ընել, տուն աւրել տուն գոցել, ու հիմակ իր սերտը, իր էութիւնը կ'խոցոտէին։ Ո՛ւֆ. Գոհարին նայուածքը, խաբո՛ղ սատապատի՛ր նայուածքը։ Ի՛նչպէս չփչէ՛ր։ Մոռնալ ձեւացուց՝ մորկա՛նը սիրուն, կ'զգար թէ ան իրմէն աւելի՛ կ'տառապէր. կ'լացկրտէր։ Երջանկութեան խաբուսիկ ծիտը՝ որ բարիմբեր էր քեւերնուն ներքեւ, ներս չի մտած՝ խուսափեր ալ էր։

Դ.

Ներքեւը հո՛վ անցած մալ, վստահութիւ՛ն կըլլայ, բախտախաղ կատարելապէս։ Աղաճանին հարը, իր կարողութենէն վեր, վարկով 5–6 նախիր էր գներ, ու ղրկեր էր Հայմանայ. ցաւ էր ինկեր տավարին մէջ։ Ք է մ է ն է կ։ Կծծիութիւնը կսկծեցուցեր էր հօտաղներուն սիրտը։ Կերցուցած ձաւարին վրայ՝ ճանճին քիթովը եղ ըլլալ չէր թողեր։ Տուած ծխախոտն ալ՝ թըրիքէն հազիւ տարբերութիւն կ'ունենար։ Մարդիկը խօսք մէկ էին ըրեր, փարախատեղին դէչ էին ընտրեր, մօրացած ջուր էին խմցուցեր ու ցաւն սկսեր էր ճարակիլ։ Մէկ երկու հօտ ալ՝ օրով ծախեր էր Մնաց մինակը՝ խո՛ւրձ մը պարտքին տակ կքած։ Չկա՛ր բա բոյականի ույժ. չկար գործունէութիւն ու երբ պակսեցաւ իր էութիւնը, դրամը թուղթ մը մ կ ն դ ե զ կերաւ։ Գետինները ճանկրթելով, փետտելով, արիւն աղբելով, բնապէս միզելով. աչքերը գալարելով, «ճա՛ր մը ճա՛ր մը, պոռալով ճ ո ղ ե ց ա ւ։

Աղէկ որ խիստ է մեր եկեղեցին անձնասպաններուն դէմ։ Քառասուն-մանուկի դուռը չի բացուիր, իսկ տաններուն առջեւ ժամկոչ աղբարը ուեյո՛վ կ'լոգցրնէ դիակը՝ ու ոչ մէկ տէրտէր կ'երթայ թաղումին։ Անձնասպան եղա՝ քանի որ ալ աղաները զինքը դուրս նետէին պիտի իրենց շրջանակէն։

Մէկ-հատիկին ամուսնութիւնը, իրաւ, դժբախտութիւն էր բերեր վրանին։ Պարա՛պ տեղը հարսին ոտքին մատաղ էին մորթեր։ Պարապ տեղը բուրվառով դըրան էին առեր կարգաւորները, պարա՛պ անոյն աղքատի հաց էին բրեր, չեմին ներքեւ՝ պարա՛պ տեղը թաղեր էին չար աչքը վանող ծրարներ, դռները պարա՛պ խաչանիշեր էին կուպրով, հարսին ոտքը բարի չէր բերեր տուներնին։ Նոր հարսին մտած պահուն, հակառակ կեսուրին թոնիրին խփանը վրայ նստելուն, հարսնուկին բերանը խուփ չէ՛ր եղեր ու փոքր դիտողութեանը պահուն՝ կ'ճանկրթէր կեսուրը։

Ըրած հարսնիքնուն ամբողջ քաղաքը մատ խածեր էր։ Տարին չէր անցեր, երբ այս դժբախտութիւնը հասաւ վրանին։ Հարսին մարանցը տունը ալ տեսեր էին, եղով-մեղրով. որպէս զի տղանին անոնցմէ տու՛ն ալ ունենայ պէսպիսութիւն մը ըլլայ։ Քանի մը ոսկի ալ տուեր էին Գոհարին մօրը։ Օմիտն իրենք պատրաստեցին ու ա ռ ջ ն դ ա ր ձ ի ն օրը չլրացած՝ կինկանը գրկէն տարեր էին։ անեխիքորները՝ հաշի՛ւը կարգադրելու։

Հարուստը քառասուն տարին է՝ կ'աղքատանայ կըսեն, բայց աւորինը՝ քառասուն վայրկեան տեւեց չտեւեց։ Սղաճանին ըսես. խելքը բանի չի հասնիր. կապած ունել ջուխտ մը խօսք հազիւ կրնայ իրարել · իրե՛ն

ժամանակար։ Ականջումս ի լ լ ի ք Թեփ չարժող բան մը վերջապէս, որ ճիտ ծռելէն, աղաչելէն անդին չէր անցներ։ Հովը ո՛ր ծակէն գալն ի՛նչ կուանէր սա կարգուկ տղեկը, որ երբէք փութկոտութիւնը չէր ունեցեր փոր մը խելք մէկտեղելու՝ Թափո՛ւր գանկին մէջ։ Անչափ անզգայ. երեսին զարնես՝ սա ինչ Թփրտուք է կըսէ։

Առնելիքտորները անով վախով կեղպած սո՛խ դարձուցին զինքն ալ, իր հարսնուկն ալ, Գոհարը, ու կեանքը որ արեւով մ'էր սկսեր՝ մԹագնած էր այլեւս։ Թաղեցին կը կրկնէր «ինչ պիտի ըլլայ. ընտրին չի մընար. մի՛ ըներ բան անօրէն՝ կը գտնես երկ տուորէն՝ էոջի սէ՛ր, էոջի՛ բարի՛։

Բիւզանդիոն 1906



# ԳԵՐԵԶՄԱՆԻՆ ՆՈՒԱԳԱԾՈՒՆ



Մ. էֆ Մեծմօրուքեանին

Գարնան առաջին օրերուն մէջ մինչ երկինքի քումայԹ մօրԹին վրայ վոԹկայի փրփրտուքները չէին երեւեր ու ծղրիԹները կը ճռային խնդագին, սովորութիւն էր ըրեր ,շրջագայելու, վերընձիւղ բուսականութեան Թարմ բուրումնաւէտութեան մը ու բնութեան զարթնօքին առԹած հեշտանքը ըմբոշխնելու համար։ Հեռուի կապոյտ լեռներուն մէջ կծկուած, սմքած տեղ տեղ ձմրան բեր՝քը կը պպզար։

Գեթսեմանոցը քաղաքին է՛ն օդասուն մէկ տեղն է․ յաճախ հոն կ'երթայի ու շատ անգամ կը լսէի ութի մը բամբ ու հակաբամբ խաղերու դաշնակաւոր ձայնաւորումը, վայրկեա նուագածուի մը մատներովը չինուած արաբական աւխենոտ եղանակներ։ Ու հեռուէն նշմարեցի մարդ մը որ նորաշէն կոթողի մը տակ նստած ութը գիրկը, գերազգրգռուած կը նուագէր, եւ երբ ոեւ է մէկին մօտենալը տեսնէր, յանկարծ կ'ընդհատէր նուագածութիւնը։

Օր մը հետաքրքրուեցայ եւ շատ մը թախանձանքներէ յետոյ, հետեւեալը պատմեց ինծի․—

Ո՜ւֆ։ ինչ հմայքոտ սարսռանքներու օծութիւնը կը քսէր հոգիիս իր անմեղունակ նայուածքին շողանքը։ Տիղմին մէջ թաթախուած ադամանդ մըն էր ան զոր հանեցի․ ձեռքերուս մէջ չփչփելով մաքրեցի, արցունքովս լուացի ու ահա իր պսպղանքէն սկսան շլմորիլ արուեստագէտներ անգամ։

Իմ աչքերս ալ․ աւա՜ղ կը վիրաւորուէին իր փայլփլանքէն․ ճերմակները աչք կ'առնեն ու տեսողութիւնը կը վիրաւորե՛ն։

Մեր ընկերներէն ոչ մէկը ուզած էր աչք դարձնել այս անշուք մանուշակին վրայ, որ ցախերու, գուղձերու ցանքին ու պտերներու յայնչի չեփփերուն, սագարթներուն տակ թաքչած էր։ Պրպտուն աչքերս իր անդուլ մորթին թաւիշ փափկութիւնը զգացին ու ազատեցի զինքը։

Սիրուած ըլլալուն գիտակցութիւնը իր գեղեցկութիւնը գեղեցիկցնեց, ներսը բռնկող արբշռանքէ․ խնդիրի հուրը՝ խայծեր դրաւ իր նայուածքին մէջ, որոնցմէ կարթուեցա՛յ։ Տարբեր շողանքներ վրթկող նետեր

մարել սկսեցին իր աչքերը, ու ինք եղաւ այն կիսանդրին՝ որուն քրմապետը եղայ տարինե՛ր։

Արուեստս ծանօթացուց ան ինծի։ Աղկաղկ բնակարանի մը խաւարուչին ու գէշ անչքութեան մէջ կորսուած էր, երբ լուսանկարը առնելու հրաւիրուեցայ։

Իր դեղուզէչ հասակը անշպար ու անսնգոյր այտերուն միապաղաղ ողորկութիւնը ու ծարիրածիր ականողիքները չուրջ պատող թարթիչներուն երկայնութենէն պրիսմակուելով ծորացող հուր ճառագայթները զգլխեցին զիս ու ինք եղաւ այն ըղձանոյշ կիւոր՝ որուն կարօտէն կը բոլհրէր սիրտս ու միայն երազիս մէջ տեսած ըլլալ կը կարծէի՛։ Արուեստս իրաւունք կու տար ինծի որ իրեն pose եր սահմանեմ, գլխաչուքը կանոնաւորեմ, կոճակները կոճկեմ փոթերը ծալքերը շտկրտեմ։ Այդ օրէն սիրոյ ընձիւղումը ծայր առաւ։ Ամէն անգամ զինքը տեսնալուս սարսուռ մը կը սրսփացընէր էութիւնս համակ ու իր մարմնին պատահական աննպատակ հպում մը զիս կը խելքաէր պարզապէս։ Ալ իր կեանքին կապուած մէկ օղակը եղայ․ գործս լրացուցածիս պէս իր քով կը փութայի․ իր ծունկերուն վրայ կը հանգչեցնէի գլուխս․ մազերուն շագանակագոյն հիւսկէնները կը քսուէին երեսիս, երբ իր դաշնաւոր ձայնով բան մը քսփսալ ուզէր ականջիս։ Ցոյր ձեռքերը իմիններուս մէջ կ՚առնէի․ մատները ճղաւորուած տեղերուն փոսիկները կը չփչփէի, ու կուզէի այսպէս յորսա՛յս փռուիլ իր առջեւը՝ յաւիտեա՛ն։ Հաշիշի զինովցնող բուրումնաւէտում մը կը ծորէր իր էութենէն ու իր քով կը մոռնայի ինքզինքս։

Օր մըն ալ հիւանդ ինկաւ ան, երազանքի՛ս դիցուհին։ Տաք քրտինք մը կը խաչէր զինքը ու սոսկա-

լի՛ նոպայի մը մէջ կը տուայտէր։ Անարին քով նստայ․ գիշերը ցորեկին խառնած հսկեցի․ ճշմարիտ հիւանդապահը եղայ ու բժշկութենէ ունեցած փանաքի ծանօթութիւններս կիրարկեցի․ առողջացաւ վերջապէս, բայց աւա՜ղ, ծաղիկի պտկունքներ փոսիկնե՛ր տեղեցին իր փղոսկր այտին վրայ։ Տաքութենէ փոթփոթած մոմէ արձանիկներու դէմքը առաւ․ մեկոնափայլ վարսերուն մէջ մոխրի թելեր պսպղացին։ Մազերը խուզելու ատեն լացի՛։ Ծաղիկը իր աւերը թողուցա՛ծ էր։

Հրապուրանքը սոսկ միսին մէջ չէր սակայն, իր աչքերը, ո՜հ այդ մրայօն, սեւածիր ու թարթիչավառ աչուկներուն կենեղուտ փայլփլանքը չնսեմացա՛ւ, չնսեմացաւ իր այն հրապուրանքը, որ հոգիս իրենին կըղթեր էր։ Ու ես շարունակեցի սիրել զինքը առջի թափով։

Երկու սիրահմայ տարիներու երազայոյզ գինովութիւններէ յետոյ, օր մը դարձեալ հիւանդ ինկաւ ան։ Հոգիիս աչքերը սկսան թանալ։ Տենդը իր հուրքը աւելցուց օրէ օր մինչեւ որ խեղդեց զինքը։ Այդ մահացու օրուընէ սկսելով ձգած եմ ամէն բան, լուսանկարչութիւն եւայլն, ու մէկ բաղձանք միայն ունիմ։ Ամէն օր գալ սիրականիս շիրմին վրայ սգել եղանակներ՝ որոնցմով տարիներով օրօրած եմ իր կոյս հոգին։ Ալ ուրիշ հաճոյք գոյութիւն չունի ինծի համար։ Ու ես եղայ «Գերեզմանին Նուագածուն» ու պիտի ըլլամ ալ յաւիտեան մինչեւ որ իմ ալ անդադրում կեանքս երթայ միանալ իրենին հետ։ Կուզէ՛ նուագածութիւն, խաստանքով ակաղձուն․ բուրդ տապանէի վրայ փռուած մոռացօնքի յամա՛յր ժամեր մնխելով իր գերեզմանի՛ն քով։

«Արեւելք», 1905

# ՄԵՂՕ՛Ք...

## Ա.

Վ. էֆ. Վարդապետեանին

Գնգուզէչ ընկուզենիներով սաղաւարտուած՝ աղտորներով՝ չրջագարդուած — vignetée — պուրակներու մէջ բնրնած կայքեր՝ ժանգառիով գմբեթուած, ահա՛ Ք... քաղա՛քը...։

«Հ.» թաղը՝ կաժ-լարուած է լեռանը կողքին՝ ջուխտ մը ջուրի երիզով։ Վերի տուն ձնջրիկ ու զուլալ՝ «Ակ» էն սորսորող։ Անանկ պա՛ղ, որուն մէջ՝ ո՛չ գորտ ո՛չ ձուկ կրնան ապրիլ։ Ա՛ս է իրենց խմելու ջուրն ալ։

Վարինը գետակ մէ՝ անկանոն ափերով, աղտորներով, մօրենիներով, փշատներով, որուն վէտվ՛տումին վրայ կանդրադառնան կը խաղան՝ վերի թաղին սաղարթներուն ստուերնե՛րը...։

Աս է՛ն հայաշատ թաղին մէջ կը բնակի դարեկ ձգող է՛ն է՛ն, էծլին տունէն վեր՝ թարթեցի՞ր աչքդ. դալալարիքի սօսա՛սը կը դաշտէ՛ խելքդ։ Բարարող թիռ-թա՛ռ փախող ծիտեր, աղաւնիներ։ Վերի տուները՝ բրուկներու քովտանքը, գագաթները, սարփինաներու խիզրերէն ամկախուած խարակներու տեսքն ունին, լեռէն փրթա՛ծ միայարկ, կուծեփ բայց ծիղերո՛վ նախշուն, ու ակպամո՛ւխ...։

Վարի գետի եզերքի տուներէն մտի՛ր ներս, ու դարձդարձիկ կածաններով, դերբուկ ու դալարիքով կորսուած ուղիներով այգեստաններու ծիրաններու մէջ-

միջներու, մշուշուած «Թոզլու» սալորներու. մի-ժանուտ կաւառներու քովէն կը վերելակես վերի առուի Թաղը՝ րէհաններու, շահպրակներու, պը-տուկ-կոյողներու, եղակներու վրայ կոխոտելո՛վ..։

Աս պարտէզներուն մէջ Տաղաուա՛ր օրերը մանաւանդ այլազա՛ն տարազներով ու տարիքով հարս-ներ, աղջիկներ կը հրամուին ուլունք խաղալու, որոնց դա՛չն. հնչեղ չեչոտերը՝ կը չնրանն՝ արուի՛ն սիր-տը. .։ Գարեգ-ձղող էծէին շուրջը՝ խմբուա՛ծ են ա-նոնք, ամէն՝ ի ժիր։ Էծէն՝ իրենց պաշտելին է։ Աղն-ձուն սրտերնին վրիպած յոյսերնին, Թրվռուն ոէրեր-նին՝ անոր կը վստահի՛ն։

Անուշ, եփուն, տեսած-անցուցած կին մըն էր էծէն։ Բիթին պրնչերուն քովանքէն՝ վիշտը. Թաղ-ձութիւնը կը ծորա՛ր. երկուպրկունք խօսքին մէջ իսկ՝ վի՛շտը կը Թրթռա՛ր...։

Ո՛րչափ վեր՝ «երեսանց՝ պըլը-պըլը եանւանց՝ տ՛ւր ածէլը» ժռատտ Զորթարներէ՛ն...։

Մինչեւ 60 ը՝ օր-արեւ տեսած երիտասարդ էր միշտ, բայց, եաքը, պէսիկ պէսիկ վիշտերը ձգեցին զինքը...։ Նորէն՝ կոխած տեղը կը Թնդացնէր։ Իր խմորը, կաւը, ազնիւ էր. վիշտերը ճցեցուցեր էին ու անճաթ անօթի հնչեղութիւնը կարձագանգէր իրմէ։

Զգուկ-քփուկ, անԹերիով. կլապրաօնով դոզ-նոցով, զոտիով ու սեւ լաչակներով խուխիկուած միշտ։

Անանկ բանուկ-դատուկ, դուր-դադա՛ր չունէր։ Տան-բանին եաքը բերա՞ւ, քըմանով լարան կոլորեր, Թաղին աղքատներուն գուլպա՛յ կը հիւսէ՛ր...։

Տունին ըսեմ՝ ցոլիկ-ցոլիկ կը ցոլար։ Բակին քա-րերը չափուած չփուած։ Էրանին ազուաւին խածատու-

մը. ձգե՞ց վար՝ թութ մը գայթեցա՞ւ. միջմիջ մը, անմիջապէս կ'ալե՛ր, կը մաքրէր՝ ճանճերը փակչիլ չ'սկսած։ «Թանողին բան չառ, չի բանողին՝ պատ–տակ երկիր՝ վայս չի՞ տար, մէկ գլուխ տղայ–չաղա չու–նիմ, սրտիս ճնճղկները չեն սատկած. ալ ի՞նչու նրա–տիմ» կ'ըսէր։ Տանը դուռը, լուսամուտը նաեւ միշտ բաց էր։ Պաղչկուն ա հ ր ո տ ո ւ մ մը կարտաշնչուէր անկէ. անչափ զով ու մաքուր էր ներսը. Դռանը դէմ բազմոց մը վուշի մորթով անկիւնորած, բարձերը Կիպրոսի տպածոյ։ Դարակներուն վրայ՝ պղինձ հա–ռաններ, խալկին ծուկներ, կարմիր ու մուրճին հետ–քերը որոշ դեռ, դեղին աչտանակներ աւզած, չփուած պահուն՝ նախշուած։ Դարակին տակը՝ դդալնոցը, սե–ղանը։ Տան երեսն էր աս. Թոնիրը՝ անդին։ Դռնա–կով մը՝ անջատուած է մառանը։ Հոն ալ նոյն մաք–րութիւնը։ Ա ռ ի ք ի ն տ ա ր ձ ե կ ն ե ր է ն առկախ–ուած՝ չար–մաղ ձերէ–մաղ խարխզի պաճեր, ապուխտի փերթեր, երիշիկի տոպրակներ, ձմրան մէջ։

Ա՛նչափ հարուստ էր այդէն. երկնուցը կրակին տէրը. օձին լեղին ուզես կար իր քով։ Ապուրցուն իլլիք ուէլօ։ Ամպրներուն մէջ ձգուած նշխարհքի կտորներ՝ եղին տակն ալ սեւ գնտիկ հայր Աբրըհա–մու օրհնութիւնովը աճեցնելու, թէ ոչ, ի՞նչպէս օգ–տեցներ անթիւ օ գ ա ն ն ե ր ո ւ ն՝ դռանը ախլանքին կառչած։

Կիրակ մուտքին՝ հաւկուրին, գեաւինները կըն–քուելէն ետքը, աքեթամանին մէջ քանի մը կայծեր կը սահեցնէր գայլախազին վրայէն, ու դեղին խնկա–ծուխը՝ խաչով կատարուած ու ծակոտիկներով բուխերիկ–ուած մուխի մըլուներ կ'տարդնէր սնեակին անկիւնները

ու ապա, կը հանգչեցնէր միրականներուն լուսանկարներուն՝ առջեւ, որոնք՝ աչքերնին Էծէնուն յառած՝ կը ժպտէի՛ն կարծես։

Սուգը գալարե՜ց սիրտը. վար կառնէր ու սրտին կածէր աս լուսանկարները. երեսներուն կը քսէր ու կուլա՛ր. փա՛ռք տալով Աստուծո՛յ. չըլլար որ բարին Աստուծուն սրտին կիւճ երթար աս չուչգուհանքը. գերեզմանին մէջ վեր–վեր չիյնային. Թող տառապէր ինք՝ ձայնը վար քաշելով, արցունքները կուլ տալով ու անոնց հողն ու քարը՝ թեթեւ ըլլա՜ր։

Ալ ի՞նչն էր մնացեր, ինք ալ պէտք երթար խառնուէր անոնց երամի՛ն։ Աղօթքով, լացով կը համբէր օրերը բարիք տարտղնելով չուրջը։ Սա մեծ–մանը, հասած բուսած ցանքին մէջ ինկած կայծի լղանքով խըշխըշցուց, սեւոտեց սիրտը արեւր չառերուն․․․։

Դուր ու դարման չկար. բժիշկ չկար. ցաւը անարգել մտաւ դռնէն ալ. էրդի–պնակէն ալ՝ տունեւ աւրելով աւերելով։

Հսկում, պատարագ ու մատաղ. ահա դեղաձեւնին․․․։

«Գուրր խաչել խմե՞լ, յերկնուց հրչտակ իջնէր չէին հաւտըներ։ Միքրո՞պ ան մեզի չաք ըլայ՝ մենք տէվէի՝ չաք կըլլոնք ոզբար, աոոնք բան չեն, որ հասածկ կը մնոնի լոխմանը գայ օղուտ չընե՛ր Աւան դակտիրժիչկներն ալ՝ մէկ դեղաձեւ ունէին. «հաւկիթն նշաշտան՝ կոխէ ...ն ի վեր բռնեց՝ բռնեց թէ ո՛չ պ ա տ ը պ ը տ ր տ է»։

Աստնկ ցաւերով կը մնոնին ամօք–լուսօք կարճները. թէ՞ոչ. ստանկ դաւառներու մէջ կարգը չի խանգարի՛ր․․ ։

Ալիքնին կուլկրնին ճերմկածը ի՞նչ ընէ Գաբրիէլ Հրեշտակը։ Անդէնին՝ աշխատաւոր պէտք է հինցած լուսընկաները կարելով աստղ շինելու։

Հանդէպ'քէ մեռնողներուն թիւը'-կրկնապատիկ։ Վախցած տեղերնին չափութ-պատցնելը. բժշկութեան աւետարանը, ուրբաթագիրքն իսկ քանի՞ն փրկեցին։

Ունեւորներ փախա՛ն ցաւէն. իսկ դասալիքներն ալ՝ կնիկնին-տղաքնին ձգած՝ մեկնեցա՛ն։

Ա՛ս մահը՝ ամպոտեց խաւրոխեց էծէին 'յետնուցման արեւը իր աշտի-քերուքը, հետեւաբար սիրականը՝ խլեց իրմէն։ Ա՛հ անձին չարիկը սա՛ր ու Թորոսը հա գար օճախը վառե՛ր։

Ալ անոր յիշատակովը կապրէր. անոր հոգուն կը բարեբարէր։ Գաւառին մէջ, գլուխը ցաւողը վրան կը վազէր. աղամանին էր իր տունը։ «Ուղան բերանը կթման կով մը աժէր. բաշկտուր քիթ բռնող, աղքատ դրացինին թո՛ւք մը ջրի մէջ խղդող ունեւորներն անգամ կերկնային իրեն։ Ձեռաց-ուրախ՝ ամանները, մոխրամանը, խաչուկին անդէնը, հացին տաշտը, ամենուն էր։ Ոմանք, կը տանէին, ու, չաւզած. չի ղըփած եա ալ կը բերէին՝ անխրատութիւնո՛վ։

Ոմանք ալ՝ արուն առնելիք երակին գիտակ՝ բողլացուկներով՝ սրտէն-փունածը կը փրցնէին կիրեկնալով. կերկերալով թթնկելով։ Ջաջողեցա՞ն, սուտ հիւանդի մը պատմութիւնը. ու լրացա՛։ Երդում պատառ ըլլալով թէ՛ կամակ չկա՛յ տունը. թէ՝ արուն ջուրերնին քամուելիք. չուան-գոտի՛ են. եւայլն։ Ո՞ր պատուաւոր կին չ'զգածուիր, անձին չարիկր չի տար սանկ պարագաներում։ Անանկ երդումներ ալ կրնեն, որ ոտիցդ տակի հողը կը փախչնէ՛ «սա քեզ նայած

աչքեր՝ ճերմկի՜ն» էծէն՝ խելինհաս էր՝ պէտիկ պէտիկ ցաւերու դարմանումին։ Իրենց տան ծառայէն սորված։

Ամեն կին կուգար ու «հեռի վրայէդ» ով կըսկըսէր նկարագրել ցաւը, չինծու չառ հեղ։ Հարսին խընձորակը խախտեր է, պորտը՝ ինկեր է, թոռանը վրայ ռօֆիեա կայ. վեր-տուք ունի. տղան թպղի է, կը ճընկա՛յ, ու ամենուն կուտար ո եւ է դեղ կամ դարման։

Անարուններուն կը յանձնարարէր ընկոյզի կանանչ կեղեւին խաշաջուրը, ճնդացող մանուկին խաժուկ՝ սորը կաթին մէջ խառնուած խաշխաշով։ Սիւթլիւկէնին կաթէն քանի մը կաթիլ իբր մաքրողական.
։ Ստամոքը սաթը այրելով, ծեծելէ վերջ խմցնել հարսին ամսականը կանոնաւորելու, ականջին ցաւին կաւով քացախ քսել թշին վրայ. յօդացաւին քարիւղով չփուիլ. Թպղիոտին կարդալի՛ք. մեղրամոմ հասկին բարձրութիւնովը կամ Արեգակ Ս. Նշանին սալաքարին վրայ պառկիլ. ջուխտ մը աղուընիկ թոցնել վանքը։ Անապատու լեղի ջուրը՝ ջերմոտին, ու ինչե՛ր ալ՞ ինչ անանուն բոյսերու խաշաջուրնե՛ր Թանիջքի համար։ Աքանչելի գարեկ-ձգող մըն ալ էր։

Ձախ ափը լաջակով գոցելով՝ վրան 7 հատ գարի հատեր կը դնէր... աջ ձեռքը վրան ղափխելով կը թօթուէր՝ ծունկին զարնելով ձեռքը։

Անձնիւր գարի՝ խորհրդանիշ է՝ ո եւ է բանի։ Ցորենի հատը՝ նասիպ է կոտրած քիթերովը՝ ճամբայ. ուրիշ մէկը՝ տուն եւայլն։

Ձեռքը բանալով կըսէ «օղուլ. ահա՛ դուն, ահա՛ նասիպդ ահա՛ տունդ. տե՛ս նասիպդ տանդ մօտ կուգայ կոր» եւայլն։ Բնանուտ է նախապաշարումին կաժառը. տեսակները՝ այլազա՛ն։ Միամտութիւնն

ինչ չափ չի հրճուիր՝ երբ քաղքին թնճուկէն երեց մի քայլուի անխաբան։

Զարագուշակ գարունը՝ կը գալարէր իր սիրտը. ասչափ կը հաւատար։ Զ ա ր թ ա ծ ն ե ր ը մանաւանդ՝ միշտ կը փաթթուէին իր ճիտը։ Ամէնուն կը համակրէր։ Որդեկորոյսներ՝ դու-տուրնելով կը վարուէին տղաքներու հետ։

Տան-աղջիկներ՝ անոր է ծ է ին չարաթ օրը կընէին նախ եւ ապա՛ իրենցը. տղաքները ըսես՝ իր գործակատարներն էին...

Բզքտած սիրտերու, բուլհրած՝ սէրերու պահարանն էր ինք...

Սիրահարու-թիւն հը՛, արուն-խում թշնամին չունենա՛յ։

Ի՛ր ալ Թորոսը սիրած էր Աչխէնը. ու սիրուած ալ, ու խե՛ղճ աղջիկը անոր մահէն ետքը՝ ի՛նչ քաշեց՝ ականատես էր ինք։ Հայէ-ջուրէ կտրած, ուշակորոյս, Թորոսին անունը կ'արտաբերէր միշտ։ Էչօն հրաշագեղը թաղին էծէին ճիտը կը փաթթուէր Ցուլիսի այդ կերակ-մուտքին, «էծէ՛ ալ քաշիլէքս չի մնաց. արուն կը կկլցնեն, հոգիս չ'եյա՛ւ որ խալըսէի, ինչ կայ՝ փոքր մը մ կ ն ա ե ղ տուր՝ ազատիմ. ուրքդ պագնեմ էծէ»։

Աղջի՛ խենդ մ'ըլլար՝ մահ կայ՝ դառում չկայ. չե՞ս տեսներ գարեկը՝ աս քանի հեզ է՝ Թորոսը մօտդ կեյնայ կոր. ան՝ քուկդ է, քու նասիպդ. քիչ մըն ալ դիմացիր»։

Ի՛նչ խրախուսանք աս խօսքերը էչօյին համար։

Ի՛րը պիտի ըլլար Թորոսը. ատանց անոր՝ աշխարհ չ'կար իրեն, ան էր իր արեւը, կեանքը արդէն...

Բ.

Տէներուն վրայ, հուժկու ընկոյզներու չքաստանին տակ, Ռէհանով խնկուած բաց օդին մէջ կը քնանան գաւառացիները, աչքերնին սեւեռած աստղերուն ու լիալուսինի՛ն . . ։

Անկողի՞ն. հը՛, չըլթի մը պարզապէս ու վրան ճանճը թեւերովը անցնելիք պաստառ մը։

Հիւսիսի շրթները վարսերնին կը գզէ ու երեսնին կը լզէ՛։ Հիւանդանալն ալ ի՞նչ է, ցուրտէն մա՞րդ կը մեռնի՛։ Փորը գետնին տայ, թապը հողէն առնէ. սա՛ խասիյէթ թութը ուտէ սա ջուրը խմէ ալ մարդ կը մեռնի՞։

Աս գաւառացիները հիւանդանալ չեն գիտեր. մեռնիլ յանկարծապէս՝ կեանքերնուն մէջ չի համտեսած դեղերուն լեղի՛ն։

Էն տարէցին կուրծք իսկ միշտ բաց հովին, ծովին դէմ։ Ձմեռը՝ ձիւնը կը կուտուի կուրծքին մազոտիքին վրայ, ու, ան գունդի վերածելով կը նետէ վար ու հազոց մը, փնգտոց մը չունենա՛ր. . . . .

Հասած, բուսած, ու քրտնխաշէ երեսները վերտուած աղջկան առնթեր՝ ջլապինդ ու կարշնեզ կտրիճներ են երկնցած։

Անդին՝ մաղառի տապրակը բերնին մէջ գարձմրկող ծերունին, ա ղ ր ա պ լ ի կ էծէն։

Աղամամութը իր սրսփուքով. ած–ընկած հաւերը՝ կազկրճումով ու ճիղերը խարշափանքով նիրհերնին կը համերգեն։

Ծխախոտով բուխերկուած հազակներ՝ կը հազան. .

Բարի լուսուն, մարդուկը, տեղանքին մէջ կկուզած՝ ծը-խամորճը կը կայծկլտացնէ՝ ղաւի մը փսորով։

Աստուան աստղը իր աչուկը խփե՞ց՝ էծէնները բա-ցած են իրենցինը ու ափ առած աշխատութիւններին։

Նախ լճճալով սորսորող առուին քով են՝—որուն շրթներուն վրայ դալարիքի ծիլեր կը լողան քնթ-թախ աչքերուն երկու զօշամ ջուր զարնելու, թէ ոչ, ինչպէ՞ս երկու ծունկ աղօթքը փախան՝ բնութեան Աստծո՛ւն... «Տէ՛ր, եթէ շրթունս բանաս». փողոցին դուռը բանան գոցեն հեզ մը, առաւօտուան օրհնութիւնը ներս առնելու։ Այս՛, թաթախնիւրը պիտի ուզէ, ցայէ, խալկինը, խալ կնծու կը մոխրէ ու նստեցնէ օճախին վրայ

Ի՛նչ եփէ, բայց. նե՞ղը կը միայ պտղաբերութիւնով օրհնուած գաւառացին։ Թէք-ձայ մը ձաւար կը նետէ, գթգթացող ջուրին մէջ, պարտեզէն քանի մը ճութ բանջար. ապա խուտով. տրորուած թան. լրանալէն ետքը, սոխրաց մը, անանուխ, մաղադանոս, բէհան եղաւ բանջար-ապուր։ Վաղրնկուց ժմենցուած աս ապուրը շողուն իսկ, թթուշղուկ գովութիւն մը կուտայ, ու աս մեր կաթով-սուրճէն ալ համեղ է։

Սեղին դրած, բանն անիծած։ Հացէն ետքը էր-կրնուն. գաւկրնուն փորր կշտացնելէ ետքը սկսել տան-բանի՛. անհատնում։ Գլխորող քարը՝ գորտն բուրդ չի կապեր» աս առածներուն մէջ. դրադումները մեղուա-կան են։ Թութր թեքիել՝ միւլքէններու մէջ քամել, հառանիքին մէջ եռացնել ու տափամաններուն մէջ քա-շելով ենթարկել արեւին չոգիացնող հուրքին, ռուպը պատրաստելու համար պղտի՞կ գործ է։

Անդին կայ միշմիշը դիզուած, կը թմէջուելիք.

խնձոր՝ ճղքուելիք ու վարունգ՝ փորուելիք։ Կեռասը, բալը, պիտի քամէ, ու եռացնէ, ապա, տհաս խաղողը ամառուան սա շողուն, ջրով տրորելով ու շաքարով անուշցնելով մեծարելու հիւրերուն, դեղնագոյն ու սքանչելի՜ ...

Լրացա՞ն ասոնք. կա՛յ տակաւին քրմանը՝ լարան չինելու, ոլորելու, սանտերքը՝ բուրդի ու հնտուրքը ցաւարի, բամպակը՝ աղնելու, մթելը չմթելու գուլպաները քոքելու համար ....։

Փաղքին զբաղումը, գործել է. ու կինները օժանդակներն են այրերուն։

Մինչ այրը մաքոքը հէնքին մէջէն կ'անցնէ, անդին կինը ջահրաովը, պարպած մասուրաները կը լեցնէ՝ թելկին վրայ դարձնելով։ Խոշիկքը, նէգիւկը, կաժելը ու ներկելը կնոջ կը վերաբերին, ապա կերակուրի պատրաստութիւնը, աղւոր բանին՝ աղւոր կուտին, աղէկ որ հայուն ստնին օրհնած է, հրշտակները թառած են սեղանին վրայ. եկողը չոքի. նորէ՛ն կշտացած կը վերնայ

Հորին մէջ խոած մարդը՝ ոտքերու սոտ սարքած քախօրրանը մանչուկին ոտքին բախումին հետ կը շարժէ մանուկը քնացնելու ....։

հաճելի՛ է. տանելի՛ է սա՝ չքաստանին մէջ խրած տունիրուն մէջ աշխատիլը. սիրածները ու տղաքները չուրջը՝ աշխատիլ. ու մեռնի՛լ ա՛լ ....։

Տաւ մը, խիթ մը ունեցա՞ւ. մալեզ մը ժմնեցնող ուն՛ի քովը, խուփ մը տաքցնելով պորտուն դնո՛ղ։ Հորին թացութենէն ոթուած ցաւե՛ր ....։

Արեւը մարը մտա՞ւ, գետինը՝ կնքուեցա՞ւ, հաւակուրի վախէն ալ թողած են մաքոքը։

Շաբաթ օրերը՝ ժամուն զանգակին հետ՝ բանթող են ըրած։ Ժա՛մ. ապա, շուկա՛ն երթալով շաբթուան գնումները հոգալու՛...։ Միսք եղը գնելու։

Ամէնն ալ՝ գուրգուրանք մ'ունին աս բանուորներուն հանդէպ. որոնք շաբաթը հեղ մը շուկայ կու գան։

Յուլիսի աս կիրակի-մուտքին խնկածուխին մէջ ոճեղ մը կրակին գիրկը խունկը՝ ժանգառքի մլուլներ կը ծաւալէր դու՛րս՝ տանը ծակ ու ծուկը բուրմնաւէտա-լու։ Էջօն՝ աչքերը սեւեռած ճամբուն կ'սպասէ՛ր...։

Երբ սիրտերը սէրով կղթուած են՝ նախազուշակու-թիւնները մշտադէպ են։

Տէներուն ռէհանը ոռոգել. հողը քնքուշցնել ու անկողինին բուրդը ս ը ղ կ ե լ է ն ետք՝ անաշխատ կ'ըս-պասէր հոն՝ ա ն ո ր մուտքը դիտելու...։

Շիճիտակումը սնգուրածէր երեսը. հեւքը՝ կուռե-ցնէր սիրտը, բաղձանքը. անհջանքը կափկափել կու-տար ակռաներուն, լ ի լ ո ւ մ քրտինք՝ վրան գլուխը։ կախ-դասնը սեմանը նստած՝ ձեռքերուն մէջ առած երեսները՝ կ'սպասէ՛ր...։

Տանը սիրական հիւրն էր ան, Թորոսը. էջօյին մօրը ազգականը։

Աղուամազերով, փետուրներով խառն-կառուած բա-րձը՝ ղ ո ւ թ ն ի ո վ պորտուած վերմակը՝ անոր կը վե-րապահուէր։

Թորոսը՝ վաճառականի մը սրտոտ ու աչք-բաց գործակատարն էր։ Ա՛նչափ ազնիւ, ա՛նչափ վեհանձ, սիրա-բաց։ Աղան իր գործը վստահած էր անոր, անչափ ուղ-ղամիտ էր ան ու գործունեայ։ Պատրաստ զոհելու իր

գլուխը՝ տղային չունո՛ւն համար։

Աչքը կուշտ, տեսած-անցուցածի հով մը կար վրան։ Ոսկիները՝ անհաշիւ լեցուցած բակեղաթին աչքը. կը յանձնէր տղային. քաղաք մտած վայրկանին։ Անգամ մը՝ կողոպտուեր էր. ինք, ճարպիկութիւնով, ոսկիին ծրարը քար-սակ մը պահեր էր ու ձնձնատու եղեր։ Մօրէ մերկ՝ կապեր էին զինքը. ու թողեր հոն՝ ունիմը չ՚ունիմը թալած

Սողալով սուր քար մը ճարեր՝ պարանը քսելով աղօցեր ու ազատելով հասէր էր գեղը։

Աղան, լուրը առեր ու կորանցուցած դրամին կըսկիծը, համակեր էր սկսեր սիրտը։ Մէկ-երկու օր ետքը՝ Թորոսը, եկեր ու ոսկիներուն ծրարը յանձներ էր անոր... Քաղաք մը մարդը՝ գովեց, սիրեց զինքը ու ուրիշներ ալ՝ հեգնեցին, ատեցին «անօթի փորը սատկի՛ հպարտ էշը՝ չի պարարտանար. մարդ է՛չ ըլլալու է. ոտնակոխ ընելու հացը. վայը, ա՛ս աղան յետոյ ջին զարնէ դուրս ձգէ պիտի զինքը. մեր հարուստները ախրապներ են. չի խայթած. չի վնասած ստորադասակարգը չեն կրնար ապրիլ. մարդ կայ՝ թեռը բռնէ մարդ կ՚ըլլայ, մարդ կայ՝ բե՛ռը բռնէ մարդ չ՚ըլլա՛ր. աղքատը խելք ունենայ՝ աղքա՞տ կ՚ըլլայ. եւայլն» Ուղղամտութեան առթած հաճոյքին անծանօթ. չար. զեհրիկ հոգիներ ա՛ս ամենը...։

Գործը զինքը քար քարէ կը զարնէր։

Այսօր Մէյրամանա՛յ է, ա՛ս ծրարներով ապրանք՝ ու հոն փութա, թափօն ապրանք մանաւանդ։ Վաղը Զերմիկ-Տճրիսի է, հոն հասիր՝ արհամարհելով ամէն վտանգ, գլուխդ անութիդ տա՛կ առած։

Երկրորդ այցելութիւն էր Թորոսին, աս գաւառը։

Առաջին տեսութիւնով խոլ՝ էջօ՝ քրտներ է՛ր անոր տնական անվա՛խ նայուածքէն: Սրտին թրթռումը՝ կարմրցուցեր էր զինքը ու զգացումին յայտնումին վախը՝ քրտնցուցեր էր զի՛նքը. Ա՛հ, ինչ յանդուգն էր ա՛ն: Առա՛նց նախաբանի, անթեւեթի փաթթուեր էր միրգը, լզուրուեր էր ղըդրխը, ծծեր էր շրթները, ու պապանձեր է՛ր ինք, թուլցեր էին մկանները. Մնացեր էր անոր գիրկը՝ ժամերո՛վ: Ո՛հ, առաջին համբոյրը, այս անմոռանալի վայրկեա՛նը. կը վերյիշէր հիմա, ու քանի՛ մը ժամէն պիտի վերապրեր ա՛յն կեա՛նքը նուիրակա՛ն:

Թորոսը՝ հագիւ մտած ներս ձիուն սանձը վար չ՛առա՛ծ խակ, փոկերը չի թուլցուցած դեռ վեր էր վազեր՝ էջօ՛ն անսնելու: Աչքերուն տուներուն մէջ՝ հեշտա՛նքը կ՛ալեծփէր, սէ՛րը կը դողդղար, ու արցունքի մշուշը կը պտուտքէր՝ խնծիղէն խառնուելով կայլակելու պատրա՛ստ:

Դրանը խուն՝ բարի-եկարի համբո՛յրը. սղմրկու-մը. հեռաւորութիւնը, բացակայութիւնը. կրնա՛ն սէրը մարել՝ երբ սրտերը սկսած են ալ բորբոքիլ՛: Թորոսին սէրը՝ կեռեւեփէր նորոր. ու սա գեղուղէշ ու ամայա-մուղ լեռներու՛ն վրայի զո՛վ կենարար օդը՝ սերերու մէջէն միզուող. պղպջող ձնծիբիկ երակնե՛րը, մորակած, կրկնապատկած էին իր նիւթական բաղձա՛նքը, ՍԷՐԸ.

Էջօն՝ գտա՛ծ էր ալ իր պաշտպան սու՛րբը:

Անոր գո՛գը թափեց կուլ-տուած արցու՛նքը. անոր պատմեց անցուցած չարչարանքի օրերը. թէ ի՞նչպէս ծնողքը կրակ թափած էին գլխուն՝ մերժելուն համար անանկ թեկնածուներ որոնց համար այրող մրկող աղ-ջիկներ կային ...:

Ոնադքը կը սիրէին զինքը, բայց, թեկնածուին բարեմասնութիւններուն վրայ անդրադառնալով՝ խելքերնին կը դաշտէ՛ր, բողդ ըսածդ՝ քանի՞ն հեղ կը հանդիպի՛որ...։

Տղուն ձեռը՝ մարդ կը շրջէր. հարու՛ստ, լեզուն բերնին մէջ դարձող, դրամը՝ խօսիլ կր սորվեցնէ կըսեն, հագուստը՝ քալել։ Ալ առնէ՞ն նկատի թէ՝ ա՛ս տղան կիներու մագիլներէն յօշոտուա՛ծ սի՛րտ մը ունէր այդ փայլին ներքեւ՝ ալ անկարո՛ղ ուռճացնելու մաքուր, անարատ, առո՛ղջ սէ՛րը...։
Մեռնիմ Միամ, եւ չ'ամուսնանա՛մ պիտի եղեր էր վերջին պատասխանը Էջօյի՛ն։ Ալ յուսահատեր էին ծնողքը։

Գ.

Ցերնուցուան արեւը՝ սա՛ նահապետը՝ մարելու, անհետանալու մօտ տոհմի մը, ալ ի՞նչոր չ'ըլլար՝ աչքերնուն լուսը։

Հովերը՝ թող մեղմօրէն փչէին անոր չուրջը։ Կոխած հողերը՝ քնքուշնայի՛ն։ Վարժապետը՝ թող գգուանքով, գորովով պարուրէ՛ր զանի։ Դասերուն թո՛ղ չի հետեւէր, բացակայէր ալ շատ հեղ, թող դպրոցին կարգաւորութիւնը խանգարէր, սանձարձակ թող ժամարելլար, ի՞նչ կար, թող չի դպչէին աղուամազին անգա՛մ։ Վարժապետներուն՝ ամէ՛ն զոհողութիւն։ Տաղաուարներուն՝ նուէրներով քիթերնին սրբե՛լ, մէկին՝ կաթմածուն, մէկալին՝ հազարնոցով հին գինի ղրկելով։ Տղուն, երեսա՛նոց վախ մը, դպրոց տարուած պահուն, «Վարժապե՛տ, միսը՝ քեզի ոսկորը՝ ինծի» ով մը։

Բայց. չա՛տ խօսք մռուկ տղան, խելօք տղա՛ն, կարչնե՛ղ ուժե՛ղ կ'ըլլա՞յ, մտացի կ'ըլլա՞յ, մարդ կ'ըլլա՞յ։
Զուչուլած հաւի պէս տղայէն ըլլայ օժտուա՛ծ խսկ միտքով, կեանքի յաջողութիւն անհնկալելի՝ իրականալի չէ՛ չատ։ Գոնէ՛ չա՛տ տկար կ'ըլլայ, ձեռներեցութեան մէջ, սրտոտութեան մէջ։
«Քանի դողոս կը սողա՛յ» Մէ՛կ կռխեի՝ հինգ ցատկել. թինալ ելել. գլոռրիլ-կոռւլին ալ պէ՛տք է պատանիին։ Ա՛հ չորքա՛չ կեա՛նքը տիկլո՛զ կեանքը կուտայ մեզի օժտուա՛ծ անձե՛ր ...։

Ձեռքովնու՛ն ըրին, փի՛չ-փի՛չ. ի՞նչ կայ, աչխարքին մէջ ա՛լ մարդ տղայ ունի՞. մարդ չե՞ս, հողեղէ՛ն Աստուծո՛ ազդած ծառան, քարէ՛ն ամուր, ու, հաւկիթէ՛ն դիւրաբե՛կ ամպէն դամպէն առնու ես պիտի։ Հովէն ծովէն հոգեառունդ ժամի պիտի քիչուկ մը։ Թելքդ պատել օդկալ, գերցկրտալ, կերժկտալ սովորական բաներ միշտ։

Նահապետը օր մը կախե՞ց քիթը. սանկ փոքրիկ քետուք մը ունեցա՞ւ. ա՛լ լմնցա՛ւ, հասէ՛ք օգնութեա՛ն...։
«Գլու՞խդ կը ցաւի, փո՞րդ. սի՞րտդ. եավրու՛մ,» ու ալ անուանումը անձնիւ՛ր անդամին, ընտանիքին ամձնիւր անդամի՛ն կողմէն։ Գաղափարը դեռ չի՞ խաղար կըսէք հիւանդութիւններ՝ կազմաւորելու մէջ-
Ալ սուսգեցի՞ն բան մը ամա՛ն, հասցուցէ՛ք Գոհար Ապլան, թո՛ղ աղօթէ։
Աղօթողներ չա՛տ կան, բայց Գոհարը թաթի չափ հին արծաթ դրամ մ'ունէր, ու ան դրամը կը պտտցնէր ցաւած տեղը ու կը մրթմրթար աղօթքը։ Անանկ թե-

Թե՛ւ էր ա՛ս կնկանը բերնակը. ս ը ն ա ն դ ը լ ը ։
Աղօթած պահուն կնկանը աչքերը կուռէին արցունքով.
կերժկոտուքը ծնօտը ծնօտին չէր թողեր դայ. գ ե ր ց-
կ ր ո ո ւ՛ ք ը ըսեն՝ ամպի՛ պէս կը գոռա՛ր ներսը. յայ-
տարար նշան չար–աչքի՛ն։ Կերժկտուքը երկար–երկա՛ր
եղաւ անպատճա՛ռ երկա՛ր մէկն է աչք–ընողը եւոյլն։

Չա՛ր–աչքի ժամանակներ կտտուած ուսին, նորէ՛ն
չէ՛ին օգտեր վահանելու գինը։ Ալ ի՛նչեր։ Եօթը ծա-
կով կապոյտ ուլունքը իրե՛ն, քոռոմներ՛ըն ալ, սա՛
եօթը ծակով տասնոց դը°ամն ալ չէ քալեր։ Տանոցը
կառներն ու եօթը ջ ո ւ խ տ – բ ե ր ա ծ կիներու մէյ մէկ
ծակ ծակեւ կուտան ու կը կտտեն ուսին. աս է՛ն
զօրաւորը կը նկատուէր։ բայց, գետի՛նը ճաթեցնող,
արտը մէ՛կ նայուածքով չորցնող ձին սատկեցնող
ու խ ն ո ց ի ն հարուա՛ծ պահուն մէջ–տեղէն կտրող
չար աչքերը ի՛նչ կը հասկնան ա՛տ ըժժանքներէն...։
Ո եւ է կենդանիի, արտի նայեցա՞ր, ու մ ա շ շ ա լ լ ա՛հ
չ՚ըսի՛ր, ի՛նչ ամօթ, ու պատահումով բան մը հանդիպի,
ալ քու ք ո ր ն ա լ ի ք աչքէդ եղաւ։

Նահապետին ուտե՞լիքը։ Չէ՛, անոր չ՚էին հրամցներ
իրենց կերածը։ Բանջար–ապուրը. Աղցանը, ձաւարը,
Ս ո մ ո ւ կ ը. անոր, ալ բան չի գտնէին դգալիկ մը
խուսին վրայ կը կտրէին 4–5 հաւկիթ, ու դրգալ-
դրգալ ձգելով եղին մէ՛ջ կեփէին. ու վրան մեղր
լեցնելով կը կերցրէին. վերջապէս ի՛նչ որ ըլլար
դիւրամարս ու սննդարա՛ր...։

Առտուները՝ սեր, կարագ, մե՛ղր, « սեւ ոչխարի
մածո՛ւն »։ Ասանկ բ թ ե լ ո՛ վ. փիչ–փիչցնելով՝ կը
մեծցնէին զանի՛...։

Իրա՞ւ են, սա Նահապետը, յետամնա՛ցը դասերուն

մէջ ունի եղեր զգայնութիւն։ Տկար ֆիզիքականը, ներ-գործեր է՝ սիրտի՛ն ալ վրայ։ Դասը չի պատրաստելուն համար ակնարկութիւն մը եղա՞ւ, հը՛ զգայնիկի տե-րեւներուն նման շրթըները գալարուիլը ու լա՛լ սկսիլը՝ ակնթարթի գործ....։

Կը բողոքէր կարծես, թէ՝ ինք չէր պատասխանա-տուն չի սորվելո՛ւն։ Ծնողքը դպրոց կը ղրկէր որ հոն տղաքներուն հետ զբօսնէր ու սիրտը չի նեղանար։ Բայց սա՛ փ ր օ տ ն ե ր ո ւ ն վարժատունները, ըսե՞նք թէ գէշ են, քանի որ մանչ—աղջիկ, բամբակ ու կրակ, քով քովի հրեղէն ձգտումը ունին։

Ուսկի՛ց ո՛ւր, ծնողքը յ ե ր ծ ն ո ւ ն մէջ տեսնային կատըրնայի՞ն թէ՝ աչքերնուն լոյս, մօրը յարգանդին մէջէ՛ն նշանուած սա՛ աշխարքի պարծանք մանչուն աղջկանը՝ ելլէ ու նախ՝ դ ր ս ե ց ի ի, ապա, փ ր օ տ ի, ու վերջապէս, արուն ջուրերնին քամուելիք աղքատ աղ-ջկան մը կրա՛կը իյնա՛յ....։

Սանկ հարսները մ ի ս ն — ը ղ ը ն կ է ն կը զատե՛ն....։ Ասոնք՝ ի ն ջ ե լ ն ի՛նչ գիտեն, պ ե տ լ ա յ է ն ի՛նչ կը հասկնան. ջուխտ ձեռք պագնել, ծունկ պագնել՝ մեծի յարգ ճանչնալ՝ ինչերնո՛ւն պէտք։ Ի՞նչու, այս ինչ մ ը ս տ ը ր ի ն աղջիկը հօրմէն առաջ չի՞ քալեր. ան ինչին հարսը կեսուրէն վեր չի՞ նստիր ժողովարանին մէջ, ի՞նչ կայ ամօթը ի՞նչ է...։

Ասանկ չեղա՞ւ սա՛ իրենց թաղեցո՛ւն ալ, տղան մէկ հատիկ մը գնաց փ ր օ տ եղաւ. նշանածը՝ ետ ըրին. «ես փ ր օ տ ի չէի տուած աղջիկս» ըսեր էր հարը, ու տղան ալ՝ գնաց փրօտ աղջիկ մ՚առաւ իրաւ, ձայներնին մարդ չի լսեր, բայց՝ խեղճ ծնողքը սրտին վրայ քար դրած կը նստի՛...։

Կիրակի եղա՞ւ, խունկ ծխերը գրաւոր հոտը թռ-չուլ ու ժողովարա՛ն վազել՝ կարմիր շուրջով երգարա-նը, ոսկեզօծ աստուածաշունչը՝ ձեռքերնուն մէջ։ Կե-սուրները՝ մ՚ըչափ կը բաղձան հարսերնին առջեւնին ձգել ժամ. տանիլ, ճաղին աջէ՛ւ անցընել, հպարտա-նալ ու լսել անոր գեղեցկութեան գովասա՛նքը․․․։ Աղջիկան, բարեկամի ձեռքը պագնել տալ փողոցին մէջ իսկ․․․։

Կիրակի օրեր, գաւառացիները, թաւ-խիաց չ՚ընտ-րով կ՚ըլլա՞ն։

Կեսուրը՝ Ս. պատարագը տեսնելէն ետք կուգայ տուն. կ՚եփէ կը թափէ ու հարսն ու տղան չե՛ն գար ժողովարանէն․․․։

Ջաւարը՝ կը դոժկի. բռնիկը կը թխրի. Թաւ-խիացին վրայ եղը՝ պատա՛նք կը կապէ՛. ի՞նտոր կռնակ-նուն ի վեր չ՚երթա՛յ կերածնի՛ն․․ ։

Մէկ տանը մէջ՝ երկու եղանակ կ՚ըլլա՞յ. ամա՛ռ ու ձմե՛ռ. չո՛րս հոգինո՛ց տանը մէ՛ջ ․․։

Մեծ-պապ ե՞կաւ։ Ասոնք՝ պաշտող՝ իրենց պաշտե-լի՛ պապերուն յարգանած օրէնքները՝ Սնու պապ կը բռ-նեն։ Երեսնին աղօթարանը դարձուցած՝ «Աստուած Ա-նեղը, հաւատով խոստովանիմ»ք ըսեն ու չոքի՛ն պէտի սեղանին վերեւը՝ բայլա-ջուրը, տերեւիկէ խնողակը, թափիկը ճաշակելու. պանիրի տեղ ալ՝ քանի մը ձիթա-պտո՛ւղ. ի՛նչչափ-պու-քաշուկ են՝ պաքի կերակուրները։

Բայց, հարսն ու տղան, Աստուած անու՛շ ընէ, ելլեն իրե՛նց դէմ պաքերնին ուտեն՝ ԱՉՔԵՐՆԻՆ ԲԱՑ ԽԵԼ-ՔԵՐՆԻՆ ՎՐԱՆ։ Հաւկիթը խաշեն Զատիկ չեկած, աղեն, տապկեն, կանանչ սոխն ալ վրա՛ն անցնեն ուտե՛ն ․․․։ Գաթան ծոցը ծոմ պահելը, իրա՛ւ ունեին յարդին-

կանթինով, ու. դիտուա՛ծ ալ է, դէմքով գեղեցիկները. հոս, այս կողմերը, ընդհանրապէս թէ՛ մասցի՛ են. թէ՛ չէժնչող ու ազնի՛ւ։

Ժողվարանին մէջ՝ մինչ ամէն ոք՝ աչքը գոցել կը ձեւացնէր՝ նամակները աչքին վրայ բերելով—այլազա՛ն ձեւեր աչք գոցելու. որոնք իրենց լեզուն ունին՝ ինչպէս թանկագին քարերը ու ծաղկըները - ասոնք՝ իրարու կը նայէին կը ժպտէի՛ն միշտ։

Գայթակղութիւնը ծայր չէ՞ր տար. բայց. մեր ՍԽԵԱՑՑՐները՝ իրենց տրամաբանութիւն ունի՛ն։ Հաճելի է իրենց՝ թոյլատրել բողոքական աղջկան մը՝ հրապուրել լուսաւորչակա՛ն մը։
Ասո՛նք լուսաւորչականի աղջիկ կուտան, բայց. աղջիկ չեն առներ. ինչպէս բողոքներու աղջիկ կուտան բայց աղջիկ չեն առներ ուրիշ ազգեր...։
Անո՛նք կը վստահին իրենց ազգանքին, գիտեն որ մէկ աղջիկը կը բաւէ տո՛ւն մը խմորելու։
Ապա, գիտէի՛ն որ Նահապետ ամէն զոհողութիւն պիտի ընէր տիրանալու իր սիրականին։ Ոտնակոխ պիտի ընէր պապենական եկեղեցի՛ն ալ. կը բաւէր որ հրապուրմը բոցբոքումի — paroxysme — փոխուէր։
Ասոնք բծախնդիր ալ չեն սաանկ պարագաներում, ի՞նչ կայ՝ «սիրելը՝ մեղք չէ՛»։

Այ ամէնուն գիտցած բա՛նը թղթակցութիւնը երկուքին միջեւ։ Ուշադիր թղթակցութի՛ւն։ Զ՛ըլլա՛յ որ՝ տառասխալ մնայ մէջը. կամ. քերականական։ Նո՛ր բառ նո՛ր բացատրութիւն սորվելու, երկնելու մէջ միշտ։ Տարիներ. է՛հ տեւած էր աս կեա՛նքը անո՛ւշ, պատանեկան կեանքը, խուսափելէն ետք անուշութիւն զգացուց. ինչպէս առողջութեանն ա՛լ...։

Տարինե՛ր՝ նշանուած մնացին՝ խօսքով, թղթակցութիւնով, փաղտադողի՛ համբոյրներո՛վ․․ ։
Նահապետին ծնողքը՝ ի՛նչեր բրաւ՝ մոռցնելու սա սէ՛րը։
Աղջիկներուն հրաշագեղը կը ցցնէին անոր. կը փառաբանէի՛ն։ Փաղտադողի ի՛նչ կարդալիքներ ընել կուտային սա սէրէն պաղեցնելու զինքը։
Ո՛հ չարչարանքը, կագ ու կռիւը ամեն օ՛ր․․․ ։
Սիրահարներն ալ գինովներու պէս աստիճան մ'ունին՝ ուր՝ կ'անհրնարին ամէ՛ն տագնապ։ Մէկէն կը լռէ ան, ու ալ չի պատասխաներ հարցումներուն․․․ ։
Տղան՝ ա՛լ չի խօսիլ սկսեց։ Կարծես ներքնապէս մեծ, դիւցազնական որոշում մը յանգա՛ծ էր։ Կերակուրի մատակցիլ սկսեց. արցունքէ կարմրած ուռած աչքերը՝ լռած. վրան գլուխը չոկեց, ու, խզեց յարաբերութիւնը սիրածին հետ։
«Աւօր՝ տանիկ վա՛ղ՝ անանկ. վերջի գալիքը՝ երթա՛յ ուրկէ՝ ղուռնիս ազատի՛ տանկ չի՛ մնար, կը մոռնայ. վէրքերը՝ միշտ չեն կտտար՝ կը սպիանան ալ »։
Աղջկանը՝ ինչ կ'ըլլայ։ Սէրը՝ արուին չափ չի ցնցեր կարծես. էգը։ Նահապետին հետ սիրաբանած պահուն իսկ՝ անթիւ նամակներ տեղացեր էր գլխուն։
Մէջերնին ինչ ողբերգութիւնը կայի՛ն. գեղեցիկ, զարգացած, ու քրիստոնեա՛յ մանուանց։

Քրիստոնեա՛յ տղայ՝ գաւառացի բողոքականին մէջ կը նշարակէ՝ եկեղեցիի անդամ տղայ։ Ա՛ս բառարանը՝ կ'արժէ ուսումնասիրել ։ Միլանին թանուտ կղզեն ու գրչածայրին՝ երկաթաքի՛թ. իսկ, «եթէ բարք կը հաճիս»ը անթիւ «կարծեմ»ներով ու «չնորհակալեմ»ներով խառնուած լսեցի՞ր ալ ապահով բողո-

չափման մըն է խառնակիքը։ Գնացած, ու ամուսնացաւ այ։ Տարիներ անցա՞ն խեղճ հօրը աչքերը ճերմկիլ սկսեցին մօրկանը կուզը դուրս եկաւ, բայց ան Նահապետը յամառեցաւ միշտ։ Ա՞նչափ փնտռեցի աղջիկներէն՝ ոչ մէկը ընտրեց։ Չի նայեցաւ իսկ վրանին. Նշանածը, այ զուր տեղը սպասեց։ Ալ աշխարքին քննուած էր ան։ «Պուկիւ ըրին, քա քուրուկ գոմշայր մէխառուն», կ'նզրակացնէր խեղճ Մա՞յրը...։

Դ.

Տուր ու զար նաշխուած էին ծաղիկներով. յեռներու ծաղկներ զունեղ ու բուրեղ։ Խ ր խ ն ճ ո ւ կ վերտուք մը պատերներու՝ սկսած շեղփաւորել այ։

Աստուան մշուշը՝ կը մարգարտանար անոնց ծոցին մէջը, լեզուին ծայրը։ Աստուան արեւը բիւրերազ կ'անդրադառնար անոնց վրայէ՛ն։

Գետինը կպած մորենիներ, փշատներ ծաղկած, խնկաւէտ այ։ Լեռան-տանձի խնձորի, ալոճի թզուկ ծառեր վայրահակ ծիղերով. սաղարթներով։

Լեռներու կողքին՝ կաղնիի մացառուտքը՝ փրփրալով. դալարիքը ճեքելով մխող ձնծրիկ առուներով...։

Գարնան այցելել աս անկոխ տեղերը. ու ըսել. իրաւ. սքանչելի է բնութի՛ւնը։

Ամէն բան կեանքով է բարաթունս։

«Հողերուն գ ր փ ա ց ա ծ տուն.
կովերուն պ ս ռ չ ա ծ տուն», ինչ հեշտանաք՝ թափառել աս անկոխ տեղե՛րը։

Աշնան ցանքր, այ թիզերով երկնցած օղին հոսանքովը կայլերանգուի միշտ, կանանչ, մոխրագոյն։

Հեռաւորութեան փոշիովը ներկուած՝ հեռուն լեռներ կապոյտ, դեղին, կարմիր։

Ամպերէն բարձր ծագերէն դիտել վար՝ ի՜նչ հաճոյք։ Վերը ժանգառին կայ անաղարտ, վարը՝ մշուշի հիւսքը, ցանցը ամպերուն։

Ա գ ա մ ա մ ո ւ թ ի ն հովիւներուն խարոյկները կը բոցան՝ հեռուէն անցնողին խել յիշեցնելով տաքին հեշտանքը՝ սա առտուան պաղչկուն օրուքին։

Թաղիք տամատակով, մականով հովիւներ ամէնն ալ, անուրով գամբռներու մօտ։

Հօտը կարածի անդին խաղաղօրէն։ Սպասելու են հովիւները անքուն։

Հովիւին-քունը ի՞նչ է որ։ Հազուեկ-նախճուիլ չ'կայ Տասասոկը, կը փոչէ գլխուն կիյնայ քիթին-բերնին փորը ցօղաթուրմ խոտին առած, ու թեւերուն չը-թայլումին վրայ հանդչեցուցած ճակատը մէկ երկու ժամ մնա՞ց այսպէս. ալ «քունը առած թերը ներկած է»։ Քունդ ա՛ռուչ, առողջ եղա՞ւ ինչ կարժէ առողջութիւնը որչափ որ ալ ըսեն թէ «քունը քուն կը բերէ էւնը մին»։ Արթննալէդ վերջ չ'զգացի՞ր թեւլութիւն, քնատութիւն, թ ա լ չ ը խ ը դ առած ես ալ։

Խարոյկին չուրջը, փարբերնուն վրայ պառկած, ճակատներին կրակին, ու արմուկնուն սրունքին վրայ կռթ ն ց ու ց ա ծ երեսնին՝ կը խօսի՜ն անվերջ իրենց կեանքէն որուն գլխաւոր առանցքն է, կի՛նը, ապա սխրագործութիւնին, ու վերջապէս գայլերու չանատակութի՛ւնը...։

Հացին կտորը չի դպչի ակռային, առտուն կանուխ ինչ յաջողութիւն սպասես ալ։

Տիւ-իկին ակապարկին բերանը կը քակեն, հացը,

պանիրը կը հանեն ու կը թխեն անկուշա. մերթ ալ ջուխին կ ո ւ ժ ը զգացնելով ըսեն ին։ «Հաց ու ջուր է լաւ կերակուր, կամ պանիր հաց՝ աչքդ բաց»։

Հօտաղին հացը, ա ղ է օ խ ը՝ կարգով կուտան գե- ղացիք։ Քաղաքին ալ այսպէս։ Գող հովիւներ ո՛րչափ կան։ Կաթէն կը գողնան՝ միրօջ/էն առաջ կթելով։ Սա հօտին ոչխարներուն ունձնի լին ոտուէկէն մէկ մէկ պուտ քաշէ՝ ի՛նչ չի գոյանա՛ր։ Ապա ստակեցաւ ըսէ, ջուխտ մը խօսք. ինչպէս ստուգել թէ խնձոյքի մը կե՛ս է եղած ան. կամ ճ ա ն ա վ ա ր ը տարաւ, ու այս ան գամ մորթն ալ կը միայ հովիւին. ա կ ռ ա յ - ժ ա ժ ե լ է. տիշ–քիրտալ։ Անգին ոմանք սրինգի փորձի են զբաղած ոմանք կանչելու։

Սրինգը կարեւոր գործիքն է հովիւին։ Անոր առ թած հաճոյքը անգին։ Ո՛հ անոր անսեթեւեթ խաղոտ պակասաւոր խազերը ինչ սրտեր ունին՝ արեւնոտա՛ծ. անով հօտը ջուրը կը զարնէ կը մ ա կ ա զ է. կթոցի կը տանի. կը քալեցնէ մէկ խօսքով։
Սա զոյգ մանրավէպերը՝ սրինգին հրաշքին վրայ՝ պատ- մեմ սրտեղ։

Հովիւ մը՝ կը պաշարուի աւազակներէն. իրաւ. լեռան տղայ, բայց մէկին դէմ տասը. ի՞նչ ընէր. կը յանձնուի՛։

Երբ կապելու ատենը կուգայ՝ կաղաչէ աւազակ- ներէն ունկնդրել իր սրինգին։ կը համակերպին։
Հօտաղին նշանածը ուրիշ փարախ մըն է մօտը, լեռան օդովը, արեւովը, ա՛նձրեւովը թ ր ծ ո ւ ա ծ ոչխարովը բուրմնաւէտ կարշնեղ աղջի՛ մը՝ ան ալ։ Սրինգին չեչաերովը կը հասկցնէ նշանածին թէ՝ պաշարուա՛ծ է աւազակներէն։ օգնութեան կուգան, ու, կ՚ազատեն

հօտաղը հօտը։

Ո՛հ, այս եղանա՛կը սրինգին, աքուն ու արցունք. հատիկ հատիկ կ'աղերսէ. «հասէք աղբար հասէք կը տանի՜ն կո՜ր կը տանին կո՜ր...»։

Ուրի՛շ մէ

Գեղ մը մարդ՝ մատ կը խածնէր տանուտէրին աղջկանը։

Ո՜վ կրնար դրամ օգնեցնել անոր։ Ո՛վ ունի դրամ տայ՝ անոր կուտան աղջիկը։

Հօտաղ մը՝ սիրահարած է անոր։ Սէրը՝ քաղաքէն աւելի բուռն է գեղերուն մէջ։ Ա՜նչափ տառապանքներ։ Աղջիկն ալ կը սիրէ այն անուանի սրնգահար մը, էգին ո՛րչափ կը ներգործէ նուագը։ Տանուտէրը կը կռահէ։

Անիրականալի առաջարկ մը կընէ հօտաղին։ Աս սովորութիւն է երբ մերժել կուզուի։

Սրինգով ջուրը պիտի իջեցնէ տ ա ս ն ւ ա ր ը, ու լեզուներն ջուրին չի դպչած՝ նա պիտի կանչէ։ Կրնա՞յ տալ, աղջիկը կինն է։

Սէրը յուզումը չի՞ խթաներ զգացումները, կարողութիւնն ալ։

Ցուպմունքէն, համր մը լեզու էր եղեր Ղանղալի մէջ։

Կըսկսի նուագե՛լ հօտին առջեւը ինկած ինչ սրտատրոփով, ու հազիւ իջեցուցած գետը՝ նա կը դարձնէ հօտը. յաջողած է։

Լսել այս եղանակը ու չ'արտասուե՛լ։ Կարծես ոչխարներուն ոտքը կը լզուրտէ, դէմքերը կը չոյէ. ճիտը ծուռ կ'արտասուէ՛, կ'աղերսէ՛...։

Հովիւին ձայնը լսե՛լ պատուն, քնթթախ առնող ու չի յուզուի՛լ։

Անկնճիռ երգածներին. ձայներնիրն։ Հովերգութիւններուն հրաշագեղները, ինքնատիպները ծրարուած են

վրայ մարդ կրնայ ջուր խմել՝ առա՛նց թափելու։

Մէկուն վրայինը՝ աղջիկ մըն է, տարուզէ՛ն դառնալով։

Ձախ ձեռքովը բռնած ձիուն սանձը, ու, անա՛նկ փակած թամբին վրայ։

Ձիաւոր կինե՛ր՝ ա՛նչափ շատ ա՛ս լեռնայի՛ն տեղերը. ու ա՛նչափ հաճելի է աս տպաւորութիւնը՝ արուեին վրայ։ Երբեմն, տղուն մէկը առջեւը, միւսը՝ ետեւը նստեցուցած կըլլայ, ու, կաթնկեր մանուկն ալ գիրկը. սանձը թոյլ մը ձգած ձիուն ճիտը. կինը, քիթին-դուռը, մանի կանչելով կ'երթա՛յ, անվախ ու անընկե՛ր...։

Ձին խրխնջալով, գլուխը տնկելով, երբեմն խե՛նդ շարժումներ կընէ, բայց ան, անհոգ կը խնդա՛յ իյնա՞լ, սա՞ չափ տեղէն, հո՛գը. երբ մանաւանդ՝ սանձը իր ձեռքին մէ՛ջ է։

Տղան՝ վա՛ր ցատկած էր թամբէն, ու, աղջիկն ալ կ'իջեցնէր վար։

Ակին գլուխը. սա՛ թուշի պէս սոսափող դալարիքին վրայ՝ բացին հացերնուն կապոցը։

Ձիերը՝ ոտքերնուն շղթայուած՝ կ'արածին անդին։

Սուսփի՛ւնութիւ՛ն մը, տխրութիւ՛ն մը, երկուքին ալ վրայ։ Ձիերու վրնջումը, արածումին ձայնը, ու, ագռա՛ւ մը միայն, որ, աքին փարտելով, կը կրկռա՛ր անդադար։

«Բարին ըլլայ, ղարղա՛, բարին եա՛ կուցդ գալին, թէ ոչ՝ քարի՛ն ըլլայ» ըսաւ աղջիկը...։

Ան կը շարունակէ՛ր շաղակրատութիւնը. մինչեւ որ տղան, հրացանին բլթակը քաշեց։

Ա՛ռ քու ալ բաժի՛նդ. ըսաւ ան, ու, ինկա՛ւ վար խեղճ կենդանիին՝ արունաթաթախ։

Նեղուած էր անոր կըռ-կըռէն։ Ագռաւը՝ չարագուշակ է շատ հեղ։

Պատանին բերանուն՝ մէջ կը խոշորնար։ Տառապանքի. միաքի վըրդովումի պահուն՝ հա՞ց կուտուի։ Աքողքի՛ պէս կը ծանրանա՛յ սրտիդ վրայ։

Իրար նայելով քթլայեցին,

Ո՛հ ի՛նչեր կար՝ մտքերնո՛ւն մէջ. սրտերնուն վրայ։

Թորոսը ու Էջօ՛ն էի՛ն...։

Անեւանգո՞ւմ, հը՛, ի՛նչչափ գռեհիկ սորնացած բառ։ Ո՛չ, անեւանգում չէ՛ր իրենցը. իրենցը՝ խըզումն էր, անշա՛հ նուիրական կանոնի մը՝ նուիրական պայքէրէ ուանդուած։ Աստուած չէ՞ր դրեր աս սէրը իրենց սիրտերուն մէջը։ Աստուծոյ բանկցուցածը՝ ի՞նչպէս մարէին մարդիկը։ Զոյգ, համանման չ՛էի՞ն իրենց սիրտերը, մէկին մահը՝ միւսինն ալ չէ՞ր···։

Ազգականութիւ՞ն, ո՛րչափ հեռու. գոնէ՝ արունի կա՛պ ըլլար, ո՛չ խնամութիւ՛ն կապ, բայց ՄԵՂՕՔ է ՄԵՂՕՔ է ըսեր էին ամէնն ալ, մեղա՛յ հի՛նգ պորտ, երկուքը իրար կ'առնին՝ կը միա՛յ՝ չո՛րս հի՛նգ ալ չէ···։

Աղջկան սո՞վ կայ, քէչէլի՞ս ըլլայ փէչէլի՞ս. պտղատտէն կը բերեմ. ան ինչ անօթ բան, մե՛ղք մա ռա՛նգ չեն առներ. առնեն ալ՝ տղաքնին թըպղի՛տ կ'ըլլան. աստնկո՛վ աշխարքին համն ու հոտը կը փախչի. ահա՛ ժողովուրդը։

Հը՛ գաղտուկ մը էրէին մրկէի՞ն իրենք. հա՞, գաղտուկ մը, գողունի՛ մը սիրուտկէի՞ն, միշտ աընթեր իրարու սպրէի՞ն. չէ՛, չէին գիջանած աս վատութեանը

իրենք։

Սրտին սիրածը՝ Աստուծո՛յ պսակա՛ծն է, թող չ՛ըլլա՛յ քահանային պսակածը։

Պսակող քահանա՛յ պակաս. ցնծա՛ քանի մը կարմրուկ, ու, քուրմ աղբորը պսակող անգամ կա՛յ. Թող գրե՛ն ուզած տեղերնին. իրենց ի՛նչ հոգը։ Բանի Տէրտերներ խոստացեր էին արդէն։

«Զօ՛րս պորտ, ա՛ն ալ խնամութիւ՛ն. օրհնա՛ծ մեղքը վիզո՛վս կը պահեմ» — ըսեր էր մէկը։ Պա՛տուեցան. իրա՛ւ, սիրեցի՛ն իրար, ինչպէս չ՛են սիրած հրեշտակները երկնքին մէջ. բայց, մտահոգութիւնը, տրտմութիւնը գրաւա՛ծ էր սրտերնին···։

Էջօն կախե՞ց քիթը, ամա՛ն «մեղօքութիւն» կայ անէծք կայ վրանի՛ս···։

Ալ ամէն փորձանք՝ մեղօքութեան կը վերագրէին։ Ամու՛լ մնաց ամուսնութիւնին։ Ու ժողովուրդը, կը յանկերգէր միշտ։

«Ի՛նչ պիտի ըլլար, մեղօք էր՝ ժառանգ չ՛առին, քա՛ ի՞նչ կայ՝ աշխարքիս աղջիկն էր պակսե՛ր···»։

Ե.

Չ ր թ թ ա խ ԱՍՏՂԸ՝ ԾԱՌ աղջիկ. չէնշո՛ղ, ո՛րչափ կը տղաւորուի՝ պաղ-պտուր, դէգ ու դաժան, վշտախառն spleen — պատարուն հոգիներուն վրայ։ Հակադրութիւնները՝ սիրոյ մէջ, կշիռ ունի՛ն շատ հեղ։

Նահապետ՝ տարիներու տակ կքե՛ր էր ալ։ Մա՛րն ալ՝ հա՛րն ալ՝ չու՛ր էին։ Տունը մինա՛կ էր ալ։ Ան մօրը մեռնելէ՛ն ետքը զգացեր էր վիճակին դառնութիւնը։ Անտանելի՛ է գաւառներու մէջ մինակու՛թիւնը։

Ցիտունէն վար սպասուհի չես կրնար պահել քովդ՝ առանց ազարտելու անու՛նդ... ։ Ցիտունէն վերինին ալ՝ դու՛ն սպասաւորելու ես։ Քալած պահերնուն կը կխկխա՛ն։ Էրկրի կնկան հետ գլու՞խ կ'ելլուի ապա։ Տունով-տեղով եղողներն անգամ կը չահագործուի՛ն։

Ալ դուն ե՛ղ օգտեցուր, մի՛ս օգտեցուր։ Բնութեանդ ընտելացնելու հո՛գը մանաւանդ։

Գաւառները՝ ու՞ր ճաշարան, սանկ խոհանոցնե՛ր մը աղտոտ չատ հեգ։ Մարդ կը գանի՝ սեղանին վերեւ չոգելու։

Սպասուհիդ՝ չե՛ս կրնար առնել դէմդ խօսք մը փոխանակելու համար։ Գաղտնի՞ք հաղորդել անո՛ր հը՛, ալ օձիքդ տուած ես ձեռքը. ու կեղըպած սոխ կը դարցնէ քեզ։

Նահապես, մօրը ողջութեանը չէր անդրադարձեր ասոնց վրայ։ Մօրմէն առաջ մեռնելու յոյսը կար վրան։ Կը կարծէր թէ՝ սէրը մարդը կ'սպաննէ՛ր։ Չէր խորհեր թէ՝ մահէն դժուա՛ր էր սիրով տառապի՛լը... ։

Սէրը՝ կեդրոնացուցած էր՝ մօրը վրայ։ Բազմոցին անկիւնը կը նստեցնէր մայրը, ու, ծխամորճը կայծկլտացնելը կը դիտէր ժամերով։

Ամուսնութեան, ապագայի վրայ խօսիլը՝ արգիլած էր անոր։ Ա՛հ, մայրը կը լացկրտէր սիրականին վրայ նայելով... ։ «Մէկ տղաս ասդին, մէկալս անդին. վաղը ես մեռնիմ՝ ի՞նչ պիտի ըլլայ վիճակը. ի՞նչ գիտեմ, ինտոր փիչ-փիչ մեծցուցած ե՛մ. ա՛հ մէկո՛ւ տէր՝ գերու տէր. ապէ՛թ եղայ սառ եղաւէ՛ն. Պիկի՛ի էրքա՛ քուրուկ. ի՞նչ ըրինք՝ չի կրցինք քակե՛լ, կարդալի՛ք ալ չի մնա՛ց. որբնդո՛ւս ալ. աղջիկն ալ՝ պոչատ մը. խելքը տորպկե՛ց, ալ հիմա հազար դըջա՛յ, ի՞նչ օ-

պատ». դէմը եղողին ալ այս յանկերգը՝ ․․․ Ինքնախաբութիւնը, աղէկ որ չի լքեր յուսահատները։ Անոնք ի՛նչ յոյսեր կ'երկնեն՝ մահուան անկողինին մէջ իսկ։ Սիրական բարեկամ մը, մեռնելէն ժամ մը առաջ, Պէյրութի անցագիր հանել կուտա՛ր. խե՛ղճ Թորգոմ, ուրիշ մը՝ նշանածին դէմ երթալ կը պատրաստուէր յրջօրէն։

* *
*

Ջուր–փոխե՛լ անա՛ միակ դեղագիրը՝ անյոյս հիւանդներուն մանաւա՛նդ։

Անանկ ցունց դնդեր էր իր աղկաղկ էութիւնը այս սէրը, որ հակառակ դուր ու դարմանին հա՛լք էր եղեր խեղճը։

Ջուր–փոխելու տեղ չա՛ս, բայց, լեռնային օդը կը նախընտրուէր շատ հեղ։ հո՛ն ծառեր կան, որոնց սաղարթները մշտերեր են ու ջուրեր ալ, որոնք փետուրի չափ չ'են ճնշեր ստամոքսին վրայ։

Նահապետ սա պատուակը եկած, խոհատանը առջեւ զետեղած աթոռը՝ կըսպասէր, կը մտմտար մի՛շտ․․․ Կ ե ր–ց ա ւ էր կարծես։ Ա՛նչափ շատակե՛ր։

Մինակութիւնը, վիշտը զինքը անճնաէր էր ըրած։ Ինքն իր աղբին չի հաւնողի պա՛ղ դէզ երեւոյթ մը կար վրան։

Անմեթոտ, անհնարատակ, կոտր–բրդուճ ծանօթութիւններ կուտակուած միտքին մէջ. շատը՝ «Աւետաբերէն» քաղուած ու պատուելիներէն պատուաստուած։

Անչափ բաներ էր կարդացեր իրար չի բռնող, որոնց բաւիղին մէջ մոլորեր էր, ու կորսնցուցեր ճամբա՛ն․․․ Զորս ծագերէն փչող հովերուն խաղալիկ նա-

ւակ մըն էր դարձե՛ր։ Ամէնէն շատ կը հետամտէր ուսմիա երել «փիլիսոփայութիւ՛նը» վերացակա՛ն ու գիտութիւնը որուն մէջ խառնուած կա՛յ այնչափ կնճիռներ։ Չէր զբաղեր իրակա՛ն, բնական առո՛ղջ կեանքո՛վը···։

Նախ «տարրաբնակայնութիւն» մը — անուանական առանց հասկնալո՛ւ առանց կարդալո՛ւ իսկ՝ Տարուինը — ապա «միատուածութիւնը» — վերջապէս բացարձակ ուրացում մը տուն էր շիներ խելքին պտուկին մէջը։

Առեն մը մի «չնար»ը՝ զգաստ ապրեցուցեր էր զինքը․ ապա պատիւին վախը, ու վերջապէս երբ ալ սկսաւ առել արհամարհել ամէն բան, կրօնք, պատիւ, անհա՛ սրտին սիրատենչիկ փետուրները թեւ–թա՛փ էին ըրեր ալ···։

Հարուստ էր այնչափ՝ որչափ չէին առ զաւտակին միջուկները, ու տակը չէր երեւար աչքին. առոր համար կը յարգէին զինքը···։ Մէկ սուրճը 40 փարա խմելու վարժ մէկին. ի՛նչ կարժէ 5 փարա մէկ սու՛րճը։

«Ազնիւ կինները՝ արգահատելով կը սիրեն» իր մինակուկ վիճակը, հիւանդոտութիւնը, սիրային պատմութիւնը, իր անյողդողդ կամքը՝ համակրանք մը հիւսած էին իր չուրջը։

Օրին մէկը, սրճարանին առջեւէն՝ մօրկանը հետ անցեր էր էջօն, ու հիացե՛ր···։ Աշխարհք սանկ արարածներ կրնա՛յ եղեր բովանդակել իր ծոցի՛ն մէջ ու ինք սառուցի մը կառչած մնացե՛ր է···։

Սէրը աւելին կը ներշնչէ մահամերձին ալ։

Ցաւեր ու հետապնդեր էր···։

Խարխլուն տնակ մը՝ րէհանի չանպրակի պատոտուկերու մէջ ընդելուզուած․··։

Այդ օրը՝ ալ իրականացա՛ծ նկատեց ամուսնութիւ-

նը. ի՛նչ երազներ կը հիւսէր։ Մտքէն անգամ չէր անցներ թէ՝ չի տային իրեն։ Աղքատի՛ աղջիկ. ի՞նչու չի տայի՛ն…։

Ան օրը՝ զոյգ մը բարեկամ գրկեց։

Անշուշտ մէկ խօսքով չէի՛ն տար։ Դռանը ա խ լ ա ն ք ի ն՝ չէին կապած աղջիկնին. ասնկ սուտ բերան մերժել մը՝ անհրաժեշտ է. մտմտալու, հարցուփորցելու համար կանո՛ն է ձգձգել։

Հարստութի՛ւն, դրա՛մ, մինակ տո՛ւն, ալ ասկէ աղուո՛ր բաղդ՝ աղջկան մը համար։

Սէ՛ր հը՛ մանկական բառ անիրակա՛ն։ Պսակը՝ սէր կը բերէ՛ արդէն…։

Հիւանդո՞տ է մանչը. ատ ալ խօ՞սք է, հողեղէն չե՞նք է՛ն առողջն ալ չի՞ մեռնիր շատ հեղ։

Սա գաւառակներուն մէջ, ուր ապրուստը հե՛շտ է նկատի առնելու՞ են հարստութիւնը հէ՞…։

Աղջիկներուն կուսութիւնը ծախելու յօժարիլ մը չէ՞ր ասի. ո՞վ առնէ նկատի ասս պարագան։ Դրամ ունեցող չորս երկան կի՛նն ալ կը խլուի՝ սուղէն չելա՛ծ իսկ. անա՛նկ աղաքներէ, որոնք պերեւեշտո՛վ կը զատորոշուին աղջիկներէ ու տանմի՛կ ալ…։

Հայրը մայրը՝ խօսքը տուեր էին. «Հայր մերա՛ն ալ ըսեր նշանին օսկին ալ՝ անցուցեր էին ճիտը. չարք-չարք պարդոսկի՛, որուն բեռանը տա՛կ կը ծռէր ճիտը. բայց Էջօյին սիրտը՝ անկո՛պ էր մնացեր, ան կըսպասէր Թօրոսի՛ն…։ Էջօյին փախուստը՝ ալ քրքրեր էր իր յոյսի դղեակը, փլատակեր էր էութիւնը ու փութացուցեր հիւանդութիւնը…։ Հաղո՞ցը չասցեր, ու ստամոքսն ալ արուըուեր էր…։

Քանիմը բարեկամով թաղեցինք զինքը։

Անչափ աշխատութիւնով հազիւ կրցանք կակուղցնել սիրտը։

Մանուան մօտ իսկ, ուզած էր իր մէկ «մարդատեացի» քմահաճոյքը յագեցնել։ Վերջին հաստատութիւնը անմահացնել, բայց արգիլեցինք։

Ինչքը՝ ազգի՛ն մնաց...

'906 Մայիս



# ՄԱՅԻՍԻ ՕՐԵՐ



Գեր. Տ Թորգոմ Ծ. Վ. Գուշակեանին

Առաւօտ է։ Մշուշով շղարշուած արեւելքի կուզ լեռներուն ետեւէն արեւը՝ իր դեղնորակ սկաւառակը վեր կը գլորէ։ Ամէն քուամներէն բան մը կը կորսուի զինքը շրջապատող շոգիէն։ Իր տմոյն քօղը տակաւ կ'անհետի ներսէն երկարող բիւրաւոր հրեղէն ասեղներու ծամ՚ծըլկումներէն. շեղ շողերը՝ շոճիներու սաղարթներուն ընդմէջէն կը մաղուին, ու ստուերը կը հալածուի՝ երկարող ճառագայթներու ցոլացումէն — ինչպէս անհետացած է մշուշը որ շղարշած էր արեւին փայլուն դէմքը։

Առտուան արեւը՝ որչափ որ ալ պաղ-մայիսի բոլոր արեւներուն պէս զարմհայ կ'ոգեւորէ, կը տաքցնէ իրիկուան զոլուտքէն սառոտացող ծիլերուն ընդարմացումը. ցօղի բիւրեղացած հատիկները կը հալին անոր շողանքէն, ու մակոտ թռչուններ իրենց բոյնին քովիկը թառած՝ տաքնալով կը ճըվրտան — իրենց փառաբանութեան մեղեդի՛ն թերեւս։

Մակոտ ծեղեր՝ կը շարուին պատ տակ անոր ճառագայթներու՛ն դէմ յանդիման՝ իրենց առտուան աղօթքը մրթմրթալով։ Նո՛ր ոգեւորութիւն մը կու-տայ առտուան արեւը անշունչ բնութենէն մինչեւ շնչաւոր բնութեան բովանդակածներուն։



Կէս օր է։ Ձինջ երկինքի բիլ, սամազուն ան-
դուս մոթըը ծածկուած է ամպի գուլաներով։ Մըրաուած, սեւցած գուլաներ տարէց կնոջ մը ծիծերուն պէս կ'առկախուին։ Տխո՛ւր գորշութիւն մը կը մաղուի ամպերէն վար, նորընծիւղ թուսականութեան վրայ։ Խղդող տաքութիւն մը կը ծանրանայ։ Ամպ-գոյ է։ Ճանճի վալսումներ իրենց բզզիւն նուագածութեանը հետ կը նախաւնուեն անձրեւը։ Բարակ չչունչ մը, ու անա, չե՛ղ ջրեր թելեր կը մանուին ուռեցած ամպերուն պորտերէն։ Արեւին առաջ չոգերը կը պրխամկուին այս երիզներուն քուղքին մէջ։ Ամպերը՝ կոքոած, իրենց սեւ մազձը կը թափեն երկրի վրայ, կը մորակահարե՛ն ամե՛ն ինչ անխնայ, ծառ, թուփ, ծաղիկ, մարդ։ Ծիւերու կամ սուսերու տակ պահուած ձնծղուկներ՝ իրենց դժգոհանքի ձ ու չ փ ու հ ա ն ք ի մեղեդին կը խառնեն անձրեւին չրչփունքին տխո՛ւր ներդաշնակութեանը հետ։ Աչխարհները կամ եզները կ'արածին անհոգ, գեղացի լաճեր վանքին մշակները գլուխնին բաց կը սպասե՛ն անձրեւին տակ՝ աժնութեան տարի մը ապահովելու աւանդամոլութենէն մղուած։ Ճեղ երիզները կը շառկուին կը նրբանան, ու ամպերը՝ կը ճերմկտին տակաւ։ Ամպերու մէջ պահուըտած կապոյտ բեհեզները կ'ընդլայնին։ Նոճիներուն վրայէն անցող քամիի խարշափը կը լսուի։ Տարափը՝ դադրած է։ Վերածնող բնութեան վերընծիւղ ծիղերու, սաղարթներու ու ծիլերու խնկոտ բուրում մը կ'արտածորի մոտակայ անտառակին թեղօշներու թաւուտքէն։ Ս. Նշանայ վանքին

սենեակին մէջ եմ, անձրեւէն փախած՝ հո՛ն եմ ապաստանած։ Գոհ եմ։

* * *

Իրիկնամո՛ւտ։ Բարտիներ, ու չամեր իրենց թախծոտ ստուերը կ'երկարեն։ Երկինքի լուրթ պաստառին վրայ կուտակուած ամպի գուլաները արեւմուտքի բըլուրներուն վրայ են կուտակուած հիմա։ Իրիկնամուտի մարմրուն, օրհասական արեւին շողերը հազի՛ւ կրնան վառթարել բոսորել ձիւնի պէս գուլաները։ Տե՛ղ, տեղ, ամպի ծուէններ կը պտուտքին քամածին սուքերէ տարուբեր։ Մաքուր օդով լիցուած է միջոցը. լիաթոք ներշնչումներս կ'երագեն սրտիս թիք–թաքը։ Երկնակամարին վրայ լուսինը՝ տմոյն լոյս մը կը մաղէ վա՛ր։ Տակաւ պիտի քաշէ արեւը իր ոսկեգոյն հիւսկէննե՛րը՝ ու լուսինը պիտի լեցնէ՛ անջրպետը, իր արծաթ փոշիի անհամար հատիկները ցանցնելով։

Ճամբէն փոսագիծերով անջատուած զմրուխտ արտերու մէջ կը նշմարեմ նորածիլ ծաղիկներու այլազան ցուցանքը։ Առաւօտուն չկային այս ծաղիկները, կամ փոշիի խաւով մը ծածկուած չէին երեւեր։ Տակաւին, անձրեւին ցօղը կը պսպղայ դողդղալով իրենց նոր բացուած բաժակներուն մէջ, ու իրիկուան սիւքին կզուտ փըչումներուն հրհրումներո՛ւն տակ իսկ տերեւի մը լայնչի չուրթին կառչած՝ կ'օրօրուըկուին ա՛յդ մարգարիտները։ Տեսարանը գգլիչ է։ Կ'ուզե՛մ ժամերով ընկղմանիլ աս «վարդապետի աղբիւր»ին քարին, պուրակին քովիկը, ըմբոշխնելու համար բնութեան ներդաշնակութիւնը, հարանուոր թռչուններու եվոցքէն ընդմիջուած։ Իր-

իկուան կծու հովը կ'ասղնոտէ վերնամորթս ու չեմ կրնար մեալ։

1903 (Արեւելք)



# ԼՈՒՍԱՆԿԱՐԸ



Գ. Էֆ. Օզանեանին

Սենեակիս տարտամ մթութեանը մէջ, ստուերոտ անկիւն մը զետեղուած է գրասեղանիս վրայ Ան լուսանկա՛րը։ Կրկնածալ վարագոյրներու ծակոտկէն փրփուրէն մղուած ճառագայթներու երիզներ կը լուսաւորեն զինքը երբեմն։ Երբ, տատուան արեւը՝ իր շողերուն շեշտ շերտերը կը ղրկէ սենեակիս պատուհանին, ու երբեմն ալ, լիալուսնի արծաթ փոշիներ քմօրէն անցնելով մանուշակի, հիրիկի թաղարներու սաղարթներուն ընդմէջէն՝ կուգան փայլեցնել, արծաթզօծել զինքը՝ իր ոսկեպատ շրջանակին թաւիշ երիզներուն մէջ իսկ։



Կատարեալ բժժանք մըն է Ա.Տ լուսանկարը ինծի համար։ Իր տեսքին առթած հոգեհմայ դիւթանքը, կախարդանքը ջլատուած, մաշուած ուժերս կ'ոգեւորէ. Նոր աւիւն, նոր խանդ կուտայ ինծի, ու անոր տեսքը հաճելի կ'ընէ անհրապոյր պանդո՛յր կեանքիս դառնու-

թիւններու։ Ձանձրախիթս spleen կը փարատէ. ան, ու ամէն տրտմութիւններուս մէջ իր խնդացող աչուկներէն սրաածուող թովանքը՝ յեղկածօրէն կը հակազդէ մելամաղձոտութեանս անկեղծ զգայումին ու իր այդ նայուածքին մէջ, տարօրէն կը խնդացնէ՝ զիս։

*
* *

Թաւիշ երիզներով եզերուն կափարիչով տուփիկի մը ոսկեպատ, սրտաձեւ շրջանակին մէջ եմ ագուցած զինքը — թանկագին քար մը՝ որ անարժէք օղակի մը վրայ է ագուցուած ու հակառա՛կ լքումին, տակաւին զինքը իր տեղը կը թողո՛ւմ։ Ի՞նչ հարկ վերցնելու, քանի որ սիրտ–շրջանակիս մէջ գամուած պիտի մնա՛յ։ Իր հրավառ ակնարկներուն սիրավառ հմայքը՝ սիրաջրի philtre կախարդիչ ներգործութիւնը կ'ընէ վրաս ու չեմ կրնար բաժնուիլ իրմէ։ Սենեակիս տարտամ ստուերոտին մէջ ուր միշտ կոյս լռութիւն մը կը տիրէ, հո՛ն, այդ շրջանակին մէջէն ոգեւորող, խնդացող նայուածքներու ցայտում մը կը պոռթկայ ու սենեակը զուարթ երեւոյթ մը կ'առնէ, — ինչպէս մուշկի փոշի մը, որ իր խունկոտ բուրումովը պիտի լեցնէր լայնածաւալ սենեակ մը — գարունը եկածին պէս. դաշտերը կ'երթամ նոր փունջ մը տալու համար իրեն, ու իր միայնակութեան ծնուցած ձանձրոյթը փարատելու համար, ջութակս թուշիս կպցուցած՝ անտանելի չարչարանքներու կ'ենթարկեմ ինքզինքս։ Այս անհո՛ւն նուագին ճպոտին շարժումքին ինք թեւ կու տա՛յ... ձայնանիշներուն տետրը իր վրայ է կարծես. տետրակին նայելու տեղ իրե՛ն կը նայիմ, ինքն է իմ նոտերս, Մուսա՛ս . . .

* * *

Գիշերը՝ լամբարիս հեւքոտ ճառագայթները կը լուսաւորեն զինքը, ու գունաւոր ծաղիկներու ստուերոտին մէջ կ'աներեւի երբեմն։ Տեսցինները, յաւիտենակա՛ն փոշին մաքրելու համար կը վերցնեն զինքը, ու ան օրը հանգիստս կը կորսուի. պէտք է զետեղեմ զինքը իր տեղը, ճիշտ իր տեղը, պառկելէ առաջ պէտք է իրեն նայիմ ու առտուան ակնարկս պէտք է որ էն առաջ իր վրայ սեւեռի ու ուրախութեանս մէջ — աւա՜ղ, չատ հազուադէպ հիմա — պէտք է խնդակից ունենամ զինքը։ Անկեղծ սիրոյ այս մասունքը՝ պաշտամունքիս առարկան է դարձած, որուն յիշատակի թեւերուն վրայ օրօրուելով կ'անցնեմ պանդոյր ու հիւանդկախ կեանքիս տառապանքը։

Թախծոտ սենեակիս մենութիւնը՝ իր լուսանկարը կը կեանքոտէ, աւերակուած սրտիս փլատակներուն քով. բուռն ոգալից վայումներուն մէջ՝ իր լուսանկարին տեսքն է որ կ'ապրեցնէ զիս։

1903 (Արեւելք)



# ԼՈՒՍԻՆԻՆ ԴԷՄ



Թ. Պատ. Կէզիւրեան

Երեք անգամներ լուսնին ճերմկուկ հատիկները ան.

տեսանելիօրէն՝ հուրթ. թենեզէ երիզներու վրայէն մազուելով, քամուելով՝ լուսաւորեցին պանդուխտի պզտերես սենեակս։ Դէմի բարդ ի բարդ լեռներուն ետեւէն խոշո՛ր սկաւառակը կը շուլլուի, կը վերելակէ դանդաղ գլորումով մը, նոր հարսի նազանքով։ Հիմա բարձրացած է ալ. երկու զուգաչա՛փ նոճիներու անհամար ճիւղերուն մէջ ցանցուած կախուած կը նայի՛ ինծի, մինչ եւ խորհուրդներով ակաղձուն գլուխս ձեռքերուս մէջ առած կը խոկա՛մ։ Պանդուխտի խոհեր, գիշերուան պէս մռայլ ու թախծոտ։

* * *

Լոյն սենեակ մը, լե՛րկ ու մերկ։ Պարզ աթոռ մը տախտակ գրասեղանի մը առջեւ զետեղուած ու անկողին մը սենեակին բազմոցին վրայ փռուած լուսնին դէմ. տախտակ՝ գետին, տախտակ՝ առաստաղ ու պատեր. որոնք կը մօտիկնան իրարու իս սեղմելո՛ւ համար իրենց ամրութիւններուն մէջ։ Լուսինին տեսքը միայն կը կեանքոտէ սենեակս։ Միակ գեղօրն է ան, որ կը դրուագէ անզա՛րդ որմերը սենեակին։ Մինակութեա՛նս, պանդխտութեա՛նս մէկ հատիկ ընկերը։ Անկողինիս վրայ անձնդիւր կ'երկնամ, լուսինին դէմ։ Խոկմո՛ւնք։ Անդաճմո՛ւնք։ Աչքս կը սեւեռե՛մ երկնակամարին վրայ։ Պշնումս կը ցուցադրէ ինծի արծաթ փոշիին թիւրաւո՛ր հատիկներուն ցանցնումով խառնուած աղօտ այերին մէջ կորսուած աստղերը — պճլտացո՛ղ աչուկներ՝ բիւրաղան այլազա՛ն արտայայտութիւնով վառվռուն, մարմրուն, սիրացա՛յտ շողանքներո՛վ։ Կա՞ն զոյգմը ապրող աչուկներ ալ, որոնք առա՛նց ուրիշ տեղ նայելու

գէթ ժա՛մ մը վրաս սեւեռա՛ծ ըլլան։ Ո՛չ...։

Հեշտանոցս — պո՛րզ թիթե՛ղ հեշտանոց մը, մանրանկարը ռուսականին — մէջ քանի մը կրակ կը ձգեմ, պանդուխտի օճախիս մէջ անթեղուած մոծիրներ, որոնք չեն մոխրացած տակաւին. ինչպէս չէ՛ մարած այն կայծը կուրծքիս, որ աւա՛ղ լքողին յիշատակը կը մարմնացնէ։ Մեծկակ բո՛ւֆ մը լամբային շրթին ու անհա աշխատութիւնս դադրած է ա՛լ հոս։

Ժամ մը վերջ։ Հեշտանոս կը սկսի երանաւորել ջրի վժացող դաշնակութիւններ։ Կ'ուզեմ տաք ձայնակցեցնել կլկլակին շեշտերը։ Անդին սամավարիս քով կը զետեղեմ կլկլակս ալ, որուն մուխքարշը, օձապտոյտ գալարումներով մինչեւ պառկած տեղս կ'երկարեմ։ Երբեմն, մածրցած կրակներ կը թափին վար, հեշտանոցին տակի ծակոտիկներէն, որոնք հաւաքուած, հրագոյն տարտամ լոյս մը կը ցոլացնեն։ Իրիկուան պաղ սիւքը անարգել նե՛րս կը սահի անվարագոյր պատուհաններու կոտրած ապակիներուն անհամա՛ր բացուածքներէն։ Դուրսը ծառերը կը սարսռան ու սաղարթները կը խարշափին, կը թափթփին։ Առուակին շշփուքը կուգայ կը խառնուի այս մելամաղձին ու կը սրսփամ. Ճերմակ լոյսի հակադիր սեւ ստուերներ կ'երակաւորին, կ'ընդգրկեն իրար՝ սենեակի՛ս մէջ։

*
* *

Հիմա լուսինը օրօրտկող նոճիներուն դագաթն է բարձրացած — աշտանակներ որոնք լոյսի գունդը կը

ջուցաղբեն — հեւացող հովէն սարսռացող սաղարթն-ն
րուն հետ իր շողերը կը ծածկէին ու չեն կորիր, ինչ-
պէս առջեւէս անցնող վէտվէտուն տաուակին վրային-
նե՛րն ալ։ Հեռու՛էն նուագածուի մը ջութակին լացող
խաղերը կ՚ալեծփեն զիս։ Կը մտաբերե՛մ։ Պանդուխտ
կեա՛նք. ի՞նչու նմանցնեմ այս կեանքը. հարուստի մը՝
որ մէկ րոպէի մէջ աղքատացա՛ծ է։ Հիմա սիրելիներս
իրարու քո՛վ են. իրարու վշտեր կը մեղմեն, ինդակից
կ՚ըլլան իրարու մինչեւ հո–ո՛ւֆ։ Մե՛ծ, երկա՛ր ու՛ֆ
ձայնարկութիւնը բերանս մուխով կը լեցնէ. կրծուր-
ցեր է թ է ն պ է ք ի ն. կը հազա՛մ։ Հեշտանախս ծորակը
կը դարձնեմ. կը լեցունեմ գաւաթս լուսինին լոյսով։

Լուսինը՝ կը խնդա՛յ վրաս կարծես, ու Վէնիւսը՝
իր խրախուսո՛ղ նայուածքով կը մխիթարէ զիս. հեռուի
նուագածուն լարերն վրայ կը թրթռացնէ, կ՚ոգեւորէ
«Ֆիրգա՛թընա ճա՛ն տայանմազ» յուզիչ մէկ «սուգի-
նաք»ը։ Կը յուզուիմ, հեղգութիւն մը կը ծանրանա՛յ
վրաս։ Կը պառկիմ՝ աչքերս սեւեռած լուսնին տմո՛յն,
գո՛րշ, պա՛ղ երեսին. որուն վրայ անդրադարձա՛ծ կը
տեսնեմ կարծես Իր դէմքին ցոլացումը։ Վերջակէտ։

1903 (Ս.լիւեյք) Կիւրին



# ԻՐԻԿՆԱՄՈ՛ՒՏ



Տոքթ. Ն. Էֆ. Պայնտըրեանին

Իրիկնամո՛ւտ։ Մայրամուտքի շողքեր՝ այերի ծալ-քերուն մէջ անթեղուած խոնաւութեան պղպջակաւո-րումէն մաղուելով կը բեկբեկին, կը պրիսմակուին, կը գունալուծուին ու լուսապատկերի մը ծիածանաւորման պէսպիսանքը արտացոլացնելէ՛ յետոյ կը լուծուին իրա-րու մէջ, կանանչութեան բիլմթնոլորտ մը ստեղծելով։

Հեռո՛ւն, մայրամուտքի հանդիման կարմիրի երան-գաւորում մը ամպերուն վաթկան կը բոսորէ՝ նշուլանքին երկարաւորումէն։

Փոս ու ցածերով լեռներ՝ հեռաւորութեան մէջ կա-պոյտ, կարմիր կամ դեղին երանգաւորուած, կը շուրջ-պատեն տեսարանը։

Դալարիքի ուռճացած սեւոյթներ կը չեչտուին ջր-ուղիներու, լեռներու միաւորումի պեղած ակօսաւորու-մին քովտանքն ի վար։ Լեռներու ստուերներու փռում-ներ, թախծոտ մեռելութեան մը կը մաղեն վար։

Լեռանը կողքն ի վեր մագլցող քաղաքին ծխաննե-րը կապոյտի ձողիկներ կը տնկեն ու անո՛ւշ էրան մը կը ծամրկէ, քմային ձեւեր գծաւորել կու տայ անոնց. մինչեւ որ, վերը այերին մէջ, մշուշի քօղք մը հիւսեն՝ քաղաքը մարմաշելու։

Մողէս մը հուսա՝ սա չփփին վրայ կը ճապատի՛։

Գլխուս վրայ բնրնած ծիտեր կը ճռլըտան. ու բա-րակող թռիչքներով. ճախրանքներով լռութեան մորթը կը կարատե՛ն։

Քաղաքէն քառորդով մ՚անջատուած պուրակի մը ե-զերքին փռուած եղտուրի մը քովիկը, մոլերու, յայնչի պտերներու, գաղձերու մէջ ընդոյր ընդոզնա՛ծ եմ։ Դաղ-ձերու կծու բուրումնաւէտութիւնը կը խեղդէ զիս։ Երեւա-կայութեանս թէլքը կը մանուածապատուի։

Հակաղի՛ր առնելր։ Դալարէջքի պորտէն կախուած վիլլա մը հոս, անտե՛ս, քարէ կառուանքներ իրարու-չաղախուած կայք մը, փայտաշէն դո՛ւռը կայ միայն։ Ծածք մը, որ վրայինին բակն է ու հասարակա՛ց ճամբայ Սա առջեւիս նեղուկին մէջ—առմաղուն երկնքի հայ-ելի՛ն բաղեր կ՚երերտկան՝ ձագուկնին չուրջերնին։ Տեղ տեղ զորան բուրդերու կախկթուքներ։ Բողերը, սպիտա՛, երկար ճիտերնին ծռմռտկելով իրենց կտուցին բացուած-քին մէջէն լեզունին կ՚երկարե՛ն. Փքոտալով վրաս կը վազեն նոր ստնարցուցած ձագուկներուն—մայրական հղածութիւն—պաշտպանութեա՛նը համար։

Սաղարթներ՝ ափ քէն սօսափելով օրուան մահուանը վրայ եղերերգներ կը համերգեն՝ լռութեան գրկին մէջ։

Շուշա՛նք մը կուգայ վրաս. թմբի՛ր մը՝ որուն մէջ կը լուծուին օրուան հոգե՛րս տուայտումներս ու անհանգանոտ կեանքիս հեւքե՛րը անվերջ։

'904 (Արեւելք) Ենի—Խան



# ԵՐԿՐԱԳՈՐԾԸ՝ ԳԱՐՆԱՆ ՄԷՋ



## ԽՈՐՍԱՆԱՑ

*Ա. էֆ. Թորգոմեանին յիշատակին*

Ագամամթնիկին՝ բոլուկները չդեղնորակուած տակաւին արեւին շողքէն, լեռներու ստուերածումը սեւոտած մարմանդը, ու գեղացին հագի՛ւ ո՛ւսած ակօսել դաշտօրայքին սիրտը, բարեկամիս հետ կ'երկնինանք քաղքէն գալնուան քիչ'ո արեւին. սահմրկող սի քին ու դալարիքի բուրումնաւէտութմոյլը խնկուած. օծուած բնութեան մէջ լուծելու՝ ձմեռուընէ զօսացա՛ծ հոգինիս։

Ջիերուն սանձերը թոյլ մը կը ձգենք ճիւերնուն. ուզածնո՛ւն պէս թող երթան, երեքուկէս ժամ հագի՛ւ կայ՝ կորիզիք ճամբանիս։ Սրտեղ՝ օրօրը խոստներ կը պեղէ, հողը կը հերձուէ՝ անոր ընդերքին մէջ թաքչած հարստութենէն չլմորուն. հունա՛ կը դափնուրի, նորէն եզներու օժանդակումով։ Աշխատող գիւղացին, այս ցուրտի՛ն իսկ, յուցամատը ուղղահայեացօրէն ճակտին տանելով՝ անոր կնճիռներուն մէջէն՝ քրտինքի աղբերակ մը ծորեցնելով կը խանէ՝ աշխատութեանը։

Բանի մը կիներ, աղջիկներ, աղջնակներ լուչակին պոչերը հանկուչտելով, հանդոյցել—պպզած՝ մատիզե՛դ կը ժողուեն։ Զկա՛յ գեղացի մը, որ, այս միջոցին ա՛յդ ընդեղէնով՝ մատիզեղով չի սնի։

Աշնան ցանքը՝ դեղնորակուեր է. մարգաստաննե-րու զմրուխտ թարմութեան ու ցօղերու կաթիլքներով մարգարտացած չեղփեր՝ կը պրիսմակեն լոյսը՝ արեւա-յին երազի պէս՝ խուսափո՛ւկ ու հաճելի. խուսափուկ՝ քանի որ արեւուն հուրքը՝ պիտի հալեցնէ՛ բիւրեղէ այդ պղպջակները։

Զով, պաղչկուն ու կծող սիւք մը կը սահի՝ հիւ-սիւսի շրթներէն.

Անհամար գիւղացիներու կը հանդիպինք։ Տրեխ-նուն առասաններ պրկուն աստառոկը ոտքերնուն ու մականը ձեռուներնին։ Քաղքէն գեղ վերադարձողները ակա-պարկը թիկնին են բամպակով, մանածի հետ փոխելով։ Տանը կինը՝ «ման ու փոխ» է ըրեր. նուկի մը մանածը երեք նուկի բամպակի հետ փոխելով ու շարունակաբար մինչև որ էրկանը, իր ու ամէնուն շապկցուն շանի՝ սաման;ով։

Երկու ընկեր, գոտեպինդ, կռնակնին բեռցուցած ուլունքով, զանակով, հինայով, ներկով եւ այլնով, ցու-պերնին ուսերնուն վրայ՝ կը քալեն։ Մէկ-երկու ու-լունք՝ հաւկիթո՛վ մը, քիչ մը ներկ՝ մուճուռ մը գա-րիով. ա՛փ մը հինա՝ կէս չարէկ եղ, ու շարունակաբար։ Ասոնք ո՛րչափ սղած են քաղաքը. ի՛նչ գիտնայ խեղճ կինը. կը բաւէ որ հաւերը ած եղած են։

Ժամ մը հազիւ է եղեր ճամբայ ելլելնիս։ Կէօլչէօ-լէր Կէօլէն ենք հասեր։ Ծաւալուն լճակ մը։

Ալիսը կը սկսի երեւիլ իր կապոյտի երիզը փաթ-տելով ափունքին վրայ հանդչած Գլխուրխ Թուրք գե-ղին շուրջը. կէս ժամ ալ առաջանալով իր ալիքներուն օղակաւորումէն ու խոխոջիւնին բամբ ձայնաւորումէն կը գինովնա՛նք։ Ալ ճամբանիս կը սկսի լղե՛լ։ Գետին

մէջ կը տեսնեմ «Նուկի Քարը» կամ Մամուն Նուկին« որ այդ ալքերուն մէջ աւանդօրէն եկեր հաստատուեր է եւ որ ատոր ծոցը բնակող ժողովը Մամունին նուկին է եղեր որով մահ ու փոխ կ'ընէ, օրական այդ ծանրութիւնով, բամբակ մանելով։ Եւ ճամբուն վրայ, երկուորբուկ բարտիներու սաղարթներուն տակ կծկուած է Բոչին աղբիւրը՝ աշխատութիւնը բիւրեղացած գեղացիին յոգնութիւնը լուծելու իր զուլալ ձնջրիկով։

Արեւը կսկսի ճակատնիս համբուրել՝ այրող չըլլներով։ Ինչո՞ւ բանալ հովանոցը, ինչո՞ւ արեւարգելին թելը քաշել գլուխնուս. կ'ուզենք որ եփինք անոր կենեզուս չողքին մէջ, տաքկուի՛նք իր հուրքէն։ Դէ՛հ, պիտի սեւնանք եղեր, բարեկամիս աղոտը աներ՝ ծախողը ծախեր է, իսկ ես՝ տուն մնա՛յ եմ արդէն։ Ընկերս դպրոցներ է լրացուցած. գիտական մանագիտական վարժարան մըն ալ, որ գինքը կ'ամրեցնէ այսօր, կեանքի դպրոցէն՝ գերազանց։ Գաւառացի մըն է հողին վրայ կը նստի, անձրեւէն չի վախնար, ան կը խնդայ զարգացած երեւի ուղողներուն վրայ որ, չե՛ն գիտեր թէ՝ արեւէն, անձրեւէն, ձիւնէն ու բուքէն չվախնալ՝ տգիտութիւն մը, անմշակութիւն մը չէ՛։

Գետին ափունքը իրարու կցող կամուրջը հասեր ենք. Պողազի կամուրջը. հի՛ն հաստատուն կամարները ջրին հետ կը կռուին։ Գոմէշի կառք մը այդ բարձունքէն ջուրին հոսանքէն կամ հմայքէն շլմորած՝ վար, այդ անդունդին մէջ նետուած է։ Թամբէն վար կը ցատկենք, սանձերը թեւերնիս կ'անցնենք ու կանցնինք։ Այս գլուխն ալ ականակիտ ակէ մը ծորած ջրի երիզ մը՝ փօշոտած ու բալոտած լեզունիս լուալ կը հրաւիրէ։ Աննուխ օղին՝ բարեկամիս սրտին թիք-թաքը

կ՚երգէ՝. «Առտուան զովուն, կէս օրուան շոգուն, իրիկուան հովուն» կը խմուի աս «գրխըմ»ը. Հատ մը գլառըեմ։ Ումպ մը ջուր, ու աչառւճի մը բրդուճը կը դնենք բերաննիս։ Թէժիին բարեկամներն ենք մենք երկուքս ալ. բարեկամս ձիուն վրայ ցատկելէ յետոյ մուխի օղակաւորումին ծայր կուտայ։

Դրսի ճամբորդութիւն մը, դիմացինդ ճանչնաս չճանչնաս՝ բարեւ մը տալ պիտի։ Աստուծոյ բարեւը կը խնայուի՞։ Ճակատնիս գետին հոսանքին տուած, ձախ կողմերնիս երկնամերձ ու ամպամերձ լեռներ՝ գետին մէջ խորասուզուած, անոր լզումներէն յղկուած, անով յղփացած, Կոլտուն սանող կածանի մը ճղլայի մը տակէն, հետերնիս կուգայ ժամ մը։ Գետին մէջ լախտերով դրկուած փայտի կոճղներ երկար ձողով ժանիքներով եզերուած մարդեր, լաթերնին հանած վարտիքնին լխլում խխում ջուր. եզերքը կը քաշեն թէեւ փայտի ժամանակը չէ տակաւին։ Գետը շատ բան կը բերէ մեզի իր անցած ափունքներուն վրայէն, անտառներ աւերելով աւարելով։ Հապէ՛ր՝ ինք պիտի սպառէ։ Փայտի անհագին կոճղներ, որ լուծ մը գոմէշ չի զօրեր քաշաք բերել, իր ալքերը տատանեակներով կը բերեն։

Կամուրջէն 3 քառորդ ժամ կանցնինք ու Ղրղըլ Ղավրագի եկեղեցիին գմբէթը կը նշմարուի. կանանչ ձորի մը կողքերուն վրայ յեց՝ գիւղ մը։ Առջեւը ծաւալուն արտօրայքի քառակուսիներ, կանանչ դեղնորակ կամ սեւորակ փռուած։ Իսկ լուծերով եզներ՝ երկաթ արօրը կը քաշեն վ ի կ ի հատիկներ ուռճացնելու իրենց սրտին մէջ։ Խոշոր երկաթ վզնոցներով, սուր ժանիքներով բոլորած, գայլին մարտնչումին համար. շուներ կը վազեն վրանիս։ Տէրը կը բռնէ վզերնուն ու կանց-

նինք անվտանգ։

Ղըզըլ Ղալըայցի աղջիկներ, իրենց մշակ ու կարչնեղ մարդոց, պապիկներուն ու թոմթրկած մամերուն աղձան են բերեր արտը. ջուրին կուժը մէկ ձեռքերնին, հացին գուշը գլուխնուն ու թանին դոյլը գաւազանի մը վրայ անցուցած ու օժանդակօրէն բռնած երկու ծայրերէն։ Գիւղացին գունչին ծայրովը կը ցուցանիչէ ո՛ւր է գեղ մը, լեռ մը ժամերով կերթամ՝ չի՛ հասնիր։ Գետը ալ քիչ մը հեռանալով Կովտունի ափունքը գօտեւորել կ'երթայ։ Զախէն կը տեսնեմ Կովտունը, մեծ գեղ մը քաղաքէն 3 ժամ.

Կը հարցնենք Խորասանու ճամբան. «Բարը օլրեցէք՝ եառ'ըն էշկըսէ։ Բարը օլրեցանք։ Կիրի բարձր լեռներ են բուռ ըռածնին։ Խորասանայի ծառերը նշմարուիլ սկսան։ Սա գեղացի կինը, ճամբան մեզի կը հանդիպի, կանգ կ'առնէ ու կը սպասէ որ նախ մենք անցնինք, յարգանքի զեղուն արտայայտումով։ Ո՛ւր են կնամեծարութիւն կամ ֆէմինիզմ։

Նախապէս լուրը ղրկուած էր գեղ, ու հրաւիրուած ալ. կը դիմաւորուինք։ Ձիերուն փոկերը կը թուլցնենք ու կուտանք որ պառցնեն։ Լաթերնուս գօտիներու սեղմումը կը նուազեցնենք։ Տանուտէրը Պոլիս չառ կեցած տանուտէր մը, Նշան աղա, փսիաթը փռեր էր դրանը մօտը ու ջրցքնե՛ր ալ։ Մայրիկը մըսայ ուէլը ձեռքը՝ մի՛շտ կ'ալէ։ Արեւ, իրա՛ւ խաչեր է մեզ ու ծանրութիւն մը նկեր է երկուքիս ալ վրան։ Ջուրով սրբուած մածունի ապուրը՝ չրթներնուս կը մօտեցունենք. մեր եր'ու ձեռքերով բռնած գլխնուս կը կործենք։ Արեւը այդ ճերմակութեանը մէջ իյնալով աչքերնիս կը խաղցնէ. կը գոցենք ու կը տ'կենք, առանց

յատակը նշմարելու, փորերնիս ուռեցնելու չափ։ Մածու-նը քնաբեր է. ու խոնջանքէն, տապէն թ խ ր ա ծ, խելք-ռած՝ մրափելու տրամադիր ենք։ Երեքուկէս ժամուան ճամ-բան՝ հինգ ժամէն կտրեր ենք։ Ո՛րչափ արագ ենք ե-կե՛ր, ու մեր ձիերը ո՛րչափ քալուկ են եղեր։

Խորասանայ «Հարս–Աննա» հայ գեղ մըն է բաբեկեցիկ։ Գեղին հարաւակողմը, բլրակի մը կողքին կպած, անոր վրայ լքթողած վանքի մը բեկորները կան Ս. Թորոս ա-նուն։ Տա՛կը՝ Թուրք գեղ մը՝ Թորոսու անունով։

Սեբաստիա քաղաքին նախնական տեղը, շատ հաւա-նական նշաններով աս գեղին տեղը կամ աւելի Ղըզըլ Ղաւրաղն ըլլալու է, Կովտունէն աւելի։

Խորասանայ հայ գիւղերուն մաքուրներուն կէշ կը նանք դասաւորել։ Իր մարդերը Պոլիս չա՛տ են գացեր եկեր թէեւ ու կնիկներն դրանը ետին թողեր տարի-ներով, սակայն, ասոնք անյողդողդ կըցեր են միայն բա-րոյականի հիման վրայ։ Տասը, տասներկու տարի էրկան երես չտեսնող, հազիւ անոր բարմունքին յիշողութիւ-նը ունեցող կիներ լեցո՛ւն։

Խորասանա ունի զոյգ մը եկեղեցի, մէկը՝ քարաշէն Տօ՛ն օրերու սահմանուած, միւսը փայտաշէն ու կոկիկ ամէն օրուանը։

Ունի քահանայ մը, Տ. Մարտիրոս Կէտիկեան, 9 – 10 տարուան ձեռնադրուած. տխլար քահանայ մը, որ կրցած է պահել իր ազդեցութիւնը։ Ջեղա՛ւ գեղացի մը որ դժգոհէր իր ընթացքէն, խծբծէր իր ոեւէ մէկ արարքը. իսկ ինք, ամէնուն հասնող, խօսող, ներկա-յանալի քահանայ մըն է։

Բաւական աղէկ վարժարան մը, ուր դասատու մը կը պաշտօնավարէ 18 ոսկի տարեկանով, բաւական ալ

դիտակից գործին։ Բայց, գրաբար քերականութիւն են ուսեր 8–10 տարեկան տղոց ձեռքը, ինչո՞ւ։ Գրաբարէն առաջ աշխարհաբարը անհրաժե՛շտ է։ Գեղի դպրոցին ծրագիրը ըստ իս, ըլլալու է. Թուրքերէն, Հայերէն, աշխարհագրութիւն, թուաբանութիւն։ Ասի՝ պէտք է գործնականօրէն աւանդել։ Ո՛չ եւս անճահ ու անճաշակ Մայրենի լեզու պիտակուած ոչինչութիւններով, այլ այս կամ այն լրագրին, հանդէսին մէջ ծրարուած բրդօններու ընթերցումով։ Թուաբանութեան գործնականը, ո՛չ առեղծուածային խնդիրներու լուծումը, ձեւարաններէ արտագրուելով մեզի հրամցուած, շլացումի, խաբկանքի համար, գրեթէ մաթէմաթիքի հեղինակ մէկ երկու անձերէ։ Իսկ եթէ ժամանակ մնայ՝ թող սորվին կենդանաբուծութիւնը, երկրագործութեան նախնական գիտելիքները,

Խորասանացի կինը աղուոր կը հագնի կոկիկ, ոչ թափթփու՛կ ու աղտոտ. մինչեւ կոնքերնին երկու դիէն ճեղքուած անթերիներու մէջ ուղղանկիւն տափակ երեսոյթ մը ունին, որուն երկու դին բացուածքէն, շապիկին մանածի քառակուսիներուն կարմրուկ նաշխերը դուրս կը պոռթկան՝ թիթեռնիկի թեւերու հանգիտութիւնով։ Անդրավարտիքնին կը տարբերկնայ՝ սովա-կաներու միջոցով։ Առջեւնին կլապատոններով դրասանկուած ղոգնոց, մէջքերնին կարմիր գօտի կամ զոգնոց։ Բահուանդներ թեւնոցներ ու ղանակներու շարքով եզրած լաչակներ։ Աղ՛ջիկները ճակերնին անհամար մանր հիւսկէններու վերածած, լարանով մը իրարու շղթայած, մազի ծայրերը ոսկի եւ արծաթ զարդամանեակներ անցուցած թիկունքնուն վրայ տարածուն լխրտուն իր պատին, ալուք, ժողուք կ'ընեն, ոչխարը կը կթեն,

կովը, հորթը կը կերեն, կը ջրեն եզները կը նային, խնոցին կը հարեն, թանը, մածունը, կարագը կը շինեն ու հունձքի ատեն քաղ կ՚ընեն, մանգաղ կը զարնեն, կամ կը քշեն՝ կեղառը քովերնին եզանը աղբելու ատենը ներքեւը բանելու համար։

Բարեկեցիկ աղջիկներ կարմիր անթերիին մէջ. զպունուն թողած հմայակին մէջէն՝ ճերմակ փրփուր աւանի մաքրութիւնը կը փոթաւորի։ Դէմքերնուն շիճիտակումը շրջանակուած մեկոն վարսերու փայփլումով որուն վրայ զանակներու կրկնաշարերով, զարդարուն գլխանոց մը, քիչ մը ընքուինուն վրայ ծռած գեղեցիկ հմայքով մը կը կոթողցնեն դէմք անշպար ու անսնդոյր գեղեցկութեան մարմնացումները, ու վայրի բուրումնալից վարդի մը ապաւորութիւնը կ՚ընեն վրադ։

Հունա, աղւոր մանչուկը ծիծէն կախուած, նորուկ հարս մը ոտքերնիս կ՚իյնայ. քովի գեղը, Կովտուն, ծաղի՛կ կա՛յ եղեր. իր աչքին լոյսն ալ չյափշտակուի՛ անկէ ու աւերակուի։ Սիրտս չի դիմանար —tube—ին երկու ծայրերը ճզմելով կը բանամ եւ փչելով ազատող հեղուկը կը ներարկեմ. գոհունակութեան ժպիտ մը կը փոթաւորէ խեղճ մօրը շրթները։ Գոգնոցին տակէն երկու հաւկիթներ կը դնէ առջեւնիս, որուն առթած խնդուքը զոյգ մը ոսկիներ չպիտի կրնային պատճառե՛լ։

Առջի գիշերնիս շատ հիանալի անցուցինք. տան—տէրնիս կաթով եղով պահեց մեզ։ Առաւօտուն՝ գուլպանիս չկայ։ Տան—տէրնիս մեր սնեակն է պառկած, մեզ պատուելու համար անշուշտ։ Լաթերնիս կը հագնինք ու գուլպաները չկա՛ն։ Շա՛տ ծիծաղելի երեւոյթ մըն ենք առած, հագուած մինչեւ փողկապնուս հանգոյցը ու առանց գուլպայի։ Տան—տէրը կ՚արթըննայ, տան աղջի-

կը գուլպանիս կը բերէ. Թոնի՛րն են տարեր խփանը, չրթին դնելու, քթոինքը չորցնելու համար։ Ազո՛ւր սովորոյթ, որ ոտքերնիս տաքցուց դէթ։

Նոյն գիշերը, երկրորդ օրն ալ մեզ մինակ չեն թողուր Տէրհայրը ու աղաները։

Ժամը 8ին ձիերնիս թամբել ենք առած ու տան — տիրոջ թախանձանքին վրայ չաքարով դալը, աղցանը, մածունը ճաշակելէ յետոյ, կը նետուինք վրանին։ Օդը ամպամած է. նրաշտութենէ խանծիլ սկսած արտօրայքին վրայ թող անձրեւ գայ ու մենք ալ թրջի՛նք, հոգ չէ՛։ Ստամբակներով կը քերենք ձիաններու կուշտը ու իրիկնամուտի հովերին տուած ճակատնիս՝ կը մտնենք Սը վազ։



## ԵՐԿՐԱԳՈՐԾԸ ԱՄԱՌՆԱՄՈՒՏԻՆ



### ԽԱՆԾԱՌ

Լ. էֆ. Ափիօնեանին

Ա դ ա մ ա մ ո ւ թ ը՝ չափիկ կը փոխէ։ Հաւերը կը կ ա գ կ ր ճ ե՛ն։ «Բունն անո՛ւշ է՝ քան զնտան փինի՛ն»։ Հագի՛ւ կը ցատկենք անկողինէն։ Հեծելանիւ ին վրա՛յ ենք։

Դ ա ր ա տ ը տ ո ց ը չքատանները՝ երկնցած փռուած են։ Կարմիր, դեղին ապրուշումները՝ կը քաշեն դուրս աբեւը՝ այլերանգ լեռներու ծոցերէն. բզեզներ ալ կը հեւ-

սէն՝ անոր ծնունդը խանձարուրն է։ Դեղնորակ փշօնք մը՝ պտերները կ'ասկիզծէ. Թիռ Թառ փոխող ծիտերու թեւերը կը փալփլա՜ն կը ցոլցլա՜ն. ․․։

Ագռաւ մը՝ ծառին ճիւղի՛ն վրայ կչռուելով, օրօրուելով կը կլկռա՛յ. «Բարի՛ն ըլլայ՝ ղարղա՛, բարին հա՝ կտուցդ գարի՛ն ըլլայ, թէ ոչ՝ քարի՛ն»։ Երեք հեղ կը կրկնայ. բարի նշան. ականջնուս ձախն ալ՝ չի՛ ճռնկար արդէն։

Տա՛նք ճայտընկու ոսկեւինն՝ տաքո՛ւկ արեւին, թող ցաթէ ճայտընուս տառուան արեւը։ Ի՛նչ ընեմ յանուցուանը։ Հարստութիւնն ալ երիտասարդութեա՛ն մէջ պէտք է։ «Ալը՝ ըրած, տէջը նստած՝» ի՛նչ ընեմ գրամը. ուտելու ակռա՛յ ալ ըլլալո՛ւ է բերա՛նը։
Առտուն՝ հով չ'կայ զովութի՛ւն կայ։

Ճամբուն քարալներուն սաղարթներէն հիւսուած՝ խառնուտիկ դողդղացող ստուերներուն վրայէն կը սահի՛ ճողա՛նը։

Աշխատութեան ծորածօն՝ կը մարգարտացնէ զովութիւնը։ Արեւը կ'սպնդնէ՛ կը ջնարկէ երեսնիս։

Մօտենա՛նք արեւի՛ն։

Ճամբան մինակուկ ամայի՛։ Գարնան ցանքը՝ դեղնորա՛կ դեռ։ Մատիդեղի կյտիքը՝ գողնոցնին զօտինուն մէջ խոթելով տոպրակցուցած, կկզած, քսուելով բութ դանակով՝ կը քաղեն աս բոյսը՝ իրենց պարէնը՝ գարնան ու ձմրա՛ն ալ։ Խայլիէ՛թ է խոտեղէնը մայիսին։

Իշուաններով գեղացիներ երբեմն կը պպին ջէմերնիս։ Խանծացիներ, Պինկոյցիներ՝ էշերնին յարդով բեռնաւորած։ Մօտի գեղացուն յարդը՝ ոսկի՛ է։ Ջխտկները քաղաք հասածին պէս՝ դրա՛մ է։

Անձնիւր հանդիպող ղարխացական, հիացո՛ւմն ակ-նար՛ մը կը թարթէ վրանին, ու սա՛ նկարագեղ բա-ցատրութիւնը կը մրթմրթան՝ իրարու ծանօթացնելով «Ճին-Արսլա՛ն»․․․։ Մարդ էա՛ը կրնա՞յ սա՛ պուտի՛կ մը տեղին վրայ դ ա ն դ ի լ ու սուրալ․․․։

Ծերուկ մը՝ քուղի՛ մորուքով թուլի՛ մը հեծած ի-ջուն վրայ, վարոցը անկած համետի վրայի ծա՛յուն՝ ուղ ղահայայօրէն, կը փչէ վար՝ իշուն խրախուսմէն։ Ձի՛ բարկանար։ Մորուքը բռնած՝ Աստուծո՛յ կը նայի, զոր մացկոտ, ու չրթները՝ աղօթքով թրթռուն։

Հայ-գեղե՛րը, ծանօթներ անհամա՛ր։ Սա Սէյֆէին զաւակները յաղթենք․ պահականոցի ռաժիկաններուն այ-ցելութիւն մը տանք ու, օ լ ը ր ի ն ք խանձա՛ռ։

Փարա՛խը տեսնենք պիտի։ Ի՛նչ պատկերներ հոն՝ յարափոխ։ Մայրենինե՛ր, իրարանցումներ գառներու, ուլերու ոչխարներու, այծերու, մօրկանը ծիծին առ-ջեւ ծնկաչոք գառը, հեւալով հրմշտկելով կը քամէ ծիծը։ Անդին՝ որբե՛րը, զո՛ւր վազվզելով մէկէն միւ՛սը․ ո՛հ, քիմքերնու՛ն լեղի՛ կուգայ՝ օտարին կա՛թը ․․․։ Կթող կիները՝ ամէնուն առջեւ կը չոքին, կը քա-շե՛ն ծիծերը․ այր մը՝ կը բռնէ՛ ոչխարին գլուխը։ Նորահաս մանղ աղջիկներ՝ մնկոն վարսերով ու չինի տակուած գէմքով նորածին գառեր, ուլեր գրկած՝ բեր՛ած են ժ ո ւ մ ի՛

Արեւուն տակ եփած սա՛ գեղի աղջիկնե՛րը մանա-անդ, կոխած տեղերնին թնդացնող․ մէկ՝ կոխող՝ հի՛նգ ցատկող, չէնչո՛ղ, ըստ, ծիծաղո՛ղ։ Մինչեւ կոն-քերնին ճղքուած ա ն թ ե ր ի ն ե ր ո ւ ն քօղանքէն՝ չապկնին դուրս կը պոռթկա՛ն թիթեռնիկի թեւերու հանդիսութիւնով։

Անհամար զարդամանեակներ, ուլունքներ, զանակնե՛ր կը փայլփլին, կը շաչեն՝ խօսակցութիւնի՛ն ղաշնաւորելո՛վ. .:

Գլուխնին կատարուած թափլա՛յով զանակներով խճողուն, որուն վրայ արեւը՝ պսպղանքնե՛ր կը փշրէ, ու, ընքուխնուն վրայ յեց՝ բիրերնին կը հրդեհէ՛...:

Երկրագործ այրը՝ եթէ բերած է լեռնէն փայտը եթէ արտեզրի փոսագիծը չիտկած է, ծալլապատիկ կը նստի ինչո՛ւան իրիկուն...: Ցանքը լրացուցած՝ պիտի սպասէ արտերուն կարմրելո՛ւն. աչքերը անկա՛ծ ամպերո՛ւն, մլա՛տ ամպերուն ..:

Երկրագործ կնկա՛նն է՝ եղանա՛կը...:

Մըղըլ-մըղըլ պիտի բանի՛ առա՛նց դուլ ու դադարի:

Աղամամութիւն արթնցած՝ երկու ղ՚ոչա՛մ ջուր երեսին զարնելէն, ու երկու ծունկ ժամ-պատարագէն ետք՝ աթարներու բեկորներով, փշատներով ու սէզերով բոցտացուցած թոնիրի վրայ ամէն օր աղձան մը պիտի գրկոցնէ՝ ու տաշտերով խմորը՝ չօթի՛ համար՝ կողէ պիտի թոնիրին շրթանը, ապա, իջած կրակին վրայ՝ խուսով բակլա մը՝ պահքին: Աւուր պաքն ալ՝ կը պահնին անոնք՝ ակնածանքո՛վ...:

Խապ առած կաթը՝ նփէ. մակրթէ պիտի, կամ պանի՛ր զարնէ: Մածունը հարելը՝ տան աղջկան գործն է:

Թանէն՝ բացկթա՛ն չորթա՛ն պիտի պատրաստէ ու գիշերն ալ՝ մրափ մը քունը զոհած՝ ձմրան մէջ մանած, գործած, շալը, կտաւը պիտի ձեւէ, գիլէ ու

էրկանը, ղաւկին ա՛նձը տայ։ Հիները՝ քրթէ՝ գուլպաները լլէ օսցինքով։ Աղէկ որ օրերը սկսած են երկննա՛լ....։

Զ'ըսենք զաւկներուն հոգը։ Անոնք, սեմանը վրայ արեւին տակ, կուռուտիկ մը անձերնին, անվարտիքջլերաց, անգտակ կը ժաժին, կը թապլտկին հողին մոխրին վրայ մատերուննուն պեղելով գետինը՝ ինչպէս հաւերը՝ իրենց բիտերովը։

Կաթին անդէնը չի վերցուցած կրակէն՝ հասած ենք մենք։ Զոքանչնիս մեզ կը սիրէ եղեր։ Զիերնիս Բ խ ա զ ո ւ սանձ ալ չ'ունի, ո՛չ ալ կեր. չո ր. կը կոթնցնենք ծառին բունին, չուք տեղին ու կը թառինք սեղմնին վերեւ։ Աշխատութենէ վերջ ճա՛շ, տաուան զովուն, ազատ քնութեան, թարմ բուսականութեանը, օդի մաքրութեանը ու ծաղիկներու, փշատներու խնկալէտումին մէջ։ Տաքուկ, եփած կաթ, երկու-երեք տարուան չեչոտ մեղր. սե՛ր ու երէ՛ց կարուած պանի՛ր ու հիմա թոնիրին կողէն փրցուած՝ չօթ ու չ'ուտո՞ւիր։

Տան-տէրնիս՝ հարկինքով կը խաղէ մեզ. խնդում է երեսը, ունեւոր ալ է. կերածնիս դուր կը սահի կոկորդնուս վար։ Հա՛ բեռան տակ՝ էշը կը մնայ. թաս մը ջուր տուողին, մենք, հոգինիս մատաղ կ'ընենք։

Ուխտերնի՛ս ընենք։

Խանծատն ալ ունի իր ը խ ա ն-դ ո ւ ռը. այսօր է օ՛րը։ Գեղը կին մարդ, աղջիկ տղայ չ'է մնացեր, գեղը զատեւորող լեռան կատարն է թառեր. փշատներու պորակի մը չուրջը։

Արագ-Խաչը՝ պահապանն է գեղի՛ն։ Արտուճի մը՝ սեւուլիկ բունն է ան, չոր ու անծիղ, ու չի փառող՝ դարերով։ Զի փրցուիր հողէն, չի ալ փորձուիր։

Ամբարիշտ մը, օրին մէկը՝ չարչրկեր էր աս անսղարթ բունը, ու պահապան սուրբը, խաչը՝ խժռեր էր ու վա՛ր էր գահավիժեր զինքը. օրերով քաշեր էր ու ճողեր վերջապէս. ի՛նչ հրաշքներ ալ։

Երկու ծունկ աղօթք ալ՝ մենք կը փոխանք՝ Բնութեա՛ն Աստուծուն...։ Տէրտէրը՝ մատաղները կ՚օրհնէ՛. կը սաղմոսերգէ՛ հա ճեյիօրէ՛ն..։

Սա՛ ձնջրիկ սրբնակէն՝ չենք կրնար բաժնուի՛լ...։ կերկննանք թիզերով կանանչին վրայ ու փշատներուն ծերպերէն երկինքը կ՚աչկենք, կապոյտ ժանգառ երկի՛նքը...։

Կէս օր եղե՞ր է, արեւը՝ չեչաւե՞ր է գլխնունս վրայ, չե՛նք զգար։ Սազարթները կը սարսռան խարշափանքով ու ծիտերուն ճլրտուքին հետ՝ լռութեան պատարագումին ջչոցը կը դաշնաւորե՛ն. ...։

Անօթեցե՞ր ենք. ի՞նչ կ՚ըլլայ, սա գուլալ ջուրը խմէ հացը կեր, ու բերնակդ բանիկ մը դրած չես ըլլար։

Ի՞նչպէս զատուիլ սա՛ տեսարանէն. իջնե՛լ սա՛ բարձունքէ՛ն....։ Գեղը՝ ոտքերնուս տակն է, իր աղիւսի շղթայումներով կառուցած կայքերով։ Բուխերիկներու փլփլուն պատկներէ ջուխտակ թեւեր կը յայնեան մուխի, ու ոտքերնուս տակ միանալով ամպիկներ կը հիւսեն՝ գեղը մարմաչելու։ Կենդանիներ կ՚ոստոստեն, կը վազեն, կարածին ոտին վրայ։ Աղքատին բուխերիկէն մուխ չ՚ելլէր «մուխը մարեր է» խեղճին. չոր հացը կը կրծէ՝ մինչե՛ւ իրիկո՛ւն...։

Կաթէն կտրուած զառեր հասեր են ալ։ Խորվլուն իր միւշկի բուրմունքովը կը գրգռէ ախորժակնիս. օղին ալ՝ նոյնպէս։

Խորվլուն էն մեծ պատիւն է՝ հա՛յ–գեղացուն։ Գլու-

խը գլխովին չ'անջատուած գօտր, քերթուելէն ետք, չորս ճուտերը իրարու մէջ անցունելով՝ փայտով մը կը կախեն հուրքը գտած, կրակը տակը իջեցուցած թոնիրին մէջ՝ ու վրան պղինձ կոնք մը դնելով՝ բոլոր տիքը կը ծեփեն մոխիրով։

Թոնիրին կրակը կը հրահրի Ներքինի սընտուէն ու ղառը 2–3 ժամէն կ'եփի, ինք իր քմայքին. ու նըրան պէս կը կարմրնա՛յ։ Ոմանք եփած քէշկէկ կը դնեն տակը, որպէս զի գառանը եղը մէջը վազէ։

Պատարագաղն ի՞նչ ընենք։ Ջուր՝ չ[illegible]ն օճառ՝ չա՛տ, արմունկնիս կը սոտթենք, ու «Հայր եւ Որդի եւ Սուրբ» բթամատնուս ցուցամատնուս ու միջամատնուս ղուզած դիրկոնով, անատօթով կը պատռենք նախ կողը՝ ու յաջորդաբար։ Փուխլի՛կ, բերանդ դնես՝ կը հալ՛ի։

Գըղերին սուրճէն ետքը՝ թող բարեւտէ բարեկամս օրուան տապէն ու քնաբեր մածունէն ծանրացած եւ թափառիմ սա ծուռիկ-մուռիկ փողոցները, թող մեղդրուիմ ալ հոգ չէ միայն դիտեմ սա պատկերնե՛րը...։

Աղմուկ մը։ Ներս կը մտնեմ։ Գեղ մը մարդը հոն է։ Ըսի ըսաւ կայ։ Չ'եղա՞ւ, վարոցը կայ, երնաս ձգտել թշնամին։

Ձայներնին վար կը քաշեն, երեսս կը նային, ու անուշութիւնով կը կարդայրեն խնդիրը։ Անդամա՛ն պիտի վարձեն նուազուրդ կար։ Ետքը ըսին «Ղազեթային գրուելէն վախցեր են»°°°։ Իմ ալ հոգս էր հատեր կուռնին ալ պիտի գրէի հոսա...։

Սա բունեղ մայրիին տակ՝ գեղին կլայկողը եկեր լարեր է փուքը, օճախը։ Մախրի կտորներուն բոցը միացած նշայի փոշիին կը կապտորակեն ամանները ու թամպակէ գնտիկը թաթխելով կլայկի կտորին մէջ կըս-

կսի չփոլ՝ պսպղացնելով ամեն կողմը։ Գեղին լամուկները պատ են բռնած չուրջը։ Աղաւնիկ է։ Կալին անձնիրէն պիտի գանձէ՝ ցորէն գարի 1–2 չափ։ Կալերը՝ ի՞նչ չափ արդիւնաբեր պիտի ըլլա՛ն, ա՛հ, երաշտութիւնը խանձեր է սէզերը, արտորայքը աչքերնին վերն է խեղճերո՛ւն։ Ամպի խուրձեր իրա՛ւ կը շողան այերին մէջ, բայց լեռը կը քաշէ՝ ու կաթ մը ջուր՝ չ՚իջնա՛ր վար․․․։ Հսկում, պատարագ, ու անձրեւի աղաչանքներ ամէն օր։

Ալ լեռներուն չուքերը սկսան սողալու՛ ու պարուրել գեղը՝ հո՛ նստուինք վրան հեծելին ու հասնինք տուներնիս։

Հեծելանիւին չղթան օճառեցինք ու՛ ճ ո ղ ա ն ը օդով ուռեցնելնուս, ու եղ-ամանին տակին մէկ երկու հարուած տալէրնուս ետք՝ նորէ՛ն սեղան, նորէ՛ն առպում, չ՚ըլլայ որ ճամբան անօթենանք. 3 ժամուան ճամբայ։

Ց ի ն ո ւ ն ք՝ օ խ տ ա ն ա կ ե ր ո ւ ք։ հացն ալ չ՚ուտուի՞ր։ Գեղացին երբ ուզէ՝ կուտէ, ուտելով ախորժակը կը բացուի։ «Պիտի ուտեք որ՝ վրանիդ երեւի՝, տես, ղարղան իջնէ՝ վրաս կտուց մը միս չի գաներ փրցնելու» — իրաւ են։

Նորէ՞ն պողող՝ ըսեն գուցէ ոմանք. բայց մենք գեղացուն կերածը, կերցուցածը կուզենք պատկերացունել հոսա, անոր հ ա ր կ ի ն ք ը, ճաշը յատկանշական ու հայկակա՛ն․․․ ։

Հայր-մերը, խաչակնքումը ու ճաշա՛կեցուքը, ըսած ու երկնցած է քահանան, ու միւսները պատրաստ են մեր երկննալուն կապանէն պատիւի կարգով միշտ։ Տղամարդերը կապասուորեն բարեւ բռնած։

*Դալը չաքարով. մատիտեղը՝ ապուխտով, եղով հաւկիթը՝ մեղրով. հօւս-պանիրը ու գգալ գգալ մածունը՝ ամենն ալ սեղանին վրայ են։ Եկողը կը չոքը սեղանին գլուխը. ճաշը. հիւրը պատուելու. Ի՜նչ կ'ըլլայ հայուն սեղանը օրհնուա՜ծ է․․․։*

*Գըզիրը՝ աղքատ գործակատարը գեղին՝ կը մեծարէ տուլճերը. կը բանէ կառքերը։ Ամէն գեղը այցելող՝ գ փ թ է ն ելածին չափով՝ թ ք ո ս ո ւ ա ծ ք մը կուտայ ա՛ս մարդուն։*

*Տան-տէրերնիս ու բարեկամներ, հետաքրքիրներ ալ կընկերանան մեզի մինչեւ գեղ-եզր։ Կին, աղջիկ, տղայ ամէնն ալ դուռն են, ու վրան նշմարած իսկ, կը լսենք իրենց փսփսուքը «քա մեղա՜յ՝ աս ինսան-օղլուին ձեռքէն բան չի խալըսի՛ր, պուտ մը տեղին վրայ՝ ի՜նտոր դահին կոր»*

*Հովը կոնակնուս կը դիւրացէ գնացքնիս։ Ա՛հ սա ճողանը չի ծակած՝ հասնէինք քաղաքնիս. դիւրին է փակցնելն ալ. բայց. ջուր չ'կայ աս կողմերը։*

*Հերկուած ու չի ցանուած արտեր, սերմնցուին պակասէն՝ կը խշխշցնեն դիտողին, զգացողին սի՛րտը. ։*

*Քաղաքէն գեղ վերադարձող գեղացիներուն պայմանադրական բարեւը տալով, կը մտնենք տուներնիս՝ թօքերնիս լայնցա՛ծ, նոր ոգեորութիւն առած՝ յիշատակներով՝ քնանալո՛ւ*





# ԵՐԿՐԱԳՈՐԾԸ ԱՇՆԱՆ ՄԷՋ



## ՊԻՆԿՕԼ

*Կ. Էֆ. Գարիկեանին*

Ոսկի հասկը կ'միմիայ՝ հակելով ծանրաբեռնուած գլուխը։ Անդաստաններ կ'սպասեն աչալուրջ։ Էրտոնին հիւքերը՝ լռութեան ծոցին մէջ ցողուններու տարրուանիր կ'ստեղծեն ու ոսկեփայլ հասկը կ'ալեծփեն։ Երկրագործին տարեմո՛ւտն է աս պահը։ օրհնութիւն ու խնծիղ ա՛ս ծիղերէն կ'բղխին. աս մարգարիտնե՛րը պիտի սրբեն կուլ տրուած արցունքներու խշխշուքն՝ առթուած՝ ցա՛ծ-հոգի վաշխառուներէ։ Փառք Բարերարին. արմիցուին տրուած դրամը՝ տոկոսը հանեց ու տունգուտ օրհնենքով լեցուց։ Ցողուններու ու ծիլերու կանանչը՝ արեւուն ոսկին ծծեր է ու կ'պսպղա՛յ. խրխուա է։ Երկրագործը հասկ մը փրցնելով ափին մէջ կը ճմրթկէ. հատիկը կ'կճեպուի՛ ինքնիրեն։ Չըլլա՛յ որ արեւուն շողքը կաթնհամն ալ ծծէ ու միայն խածղած կճեպը մնայ հատիկին շուրջը։ Աս եղանակը՝ դեղացուն թեւ թիկո՛ւնքը քակող։ Աշխատելէն աղէ՛կ ի՞նչ միջոց գտէք աս կեանքն երկարող ու տանելի դարձնող։ Բանող երկաթն անգամ չի ժանգոտի՛ր։ Գլտորող քարը գորան բուրդ չի կապեր։ Մկաններու աս շարժտուքն է՛ն աղկաղկին գնգերներուն մէջ կ'ներ-

մուծէ՝ գոնէ՝ աշխատելու աւիւն։

Ազատամարտնիկին եկե՛ր են ամէ՛նքն ալ։ Ծախերու, մորենիներու, փշատներու ցայտուն բողբոջներայ՝ կաթով լեցուն անդէն հառանին կ'ներկէի։

Ժամուն գրանը խաչ-քարերը կ'լզուրտուեն։ Մշակները՝ արեխնուն տապանը պրկուն վարոցը կոթնցուցած ոսկին՝ կ'աղօթեն։ Եղները լծուած՝ դրկուած են արտ. շտապով առ նուիրական պարտականութիւնն ալ կատարելով կ'երկնան։ Բաղ ընելու պահն արեւծագին խե՛լ մը ետք է։ Ցօղին պղպջակները պէտք է շոգիացուին տապէն. ցօղունը չե՛շտ շտկուի պիտի գերանդին չեղփին։ Արեւամուտէն վերջ կրնայ շարունակուիլ։ Գերանդին սրելու գործը է՛ն առաջինն է զբաղման. յեսան քարը չեղփին վրայ քաքսելէն վերջ «Հայր եւ Որդի եւ սուրբ»ով կը մանեն ցանքին մէջ։ Կիներն երկտոցնուն ճշմարիտ լծակիցներն են։ Ո՛չ մէկ այր կրնայ կնոջ չափ գերանդի զարնել, նկատելով իր սոտրնադաստութիւնը։ Սուր գերանդին կ'սկսի սողոսկել հասկին մէջ մէկ երկու դիզ։ Հարուածներն անոնք չուտափոյթ արագականութիւնով կ'աջորդեն իրարու որ՝ կտրուածները կարուելէ՛ վերջ իսկ կոթունուն վրայ կ'օրօրուի՛ն ու ապա, խուրձ խուրձ կը խոնհարին արտին վրայ՝ կոթունուն վրայ գերանդիին սո՛ւր ճիչէն մզմզալով, սարսռալո՛վ կարծես։ Հարուածին հծծանքը՝ տատանո՛ւմ մը կուտայ եւ մզմզող սուլանք մը, հեծծանք մը կ'ձայնաւորուի՛։ Քրտինքի զոհարներ կ'պճնաւորեն ճակատնին ու արեւին ջնարկումէն խածատումէն շինճիտակուած այտերնին կ'փայփլա՛յ։ Աշխատութիւնը՝ խնծիղի փոթաւորումը կ'ակօսէ շրթերնուն շուրջը։ Համօք սրախօսութիւններ ու մրցակցութիւն-

ներ բիբերնին կ'կկնեղուա՛են։ Հովուերգութեան փա-
փառքներ կ'թեթեւցնեն ստամոքսին։ Զնարիկ աղ-
բիւրէն լեցուցած կուժը դէզատեղը, ցանցին մէջ զու-
լալ կ'սպասէ։ Թան-ապուրը, հող-պանիրը, բազկէ թուր-
շին ու վարունգներ՝ կ'սիրենին։

Բաղի ատեն անցնի՛լ, որտեղէ՝ ի՛նչ համոյք։ Հարսա-
ղի՜կ, ձայն ձայնի տուած ի՛նչ անուշ կ'երգե՛ն։
Անցորդին կ'կարկառեն քաղուածքէն փունջ մը՝ դրա-
մական պարգեւի ակնկալութիւնով։ Ամանք սաղաճա-
ղով կ'կոստակեն քաղուածքը ու դէզերու կ'վերածեն մէյ
մէկ տալի տարողութեան չափով։ Արտին պարտին վրայ
կ'բրգանան ճալաղները*։

Բաղը լրացաւ։ Սայլին վրայ օրէն-ձողը, դնե-
լով անատօթով* ճալաղները կ'բեռնան՝ էօրէնը* կալը
փոխադրելու։ Եզներուն ակռնչէն բռնելով լծափայտին
տակ կ'քաշեն ու գլուխնին լուծին սամիներուն մէջ ան-
ցնելով՝ առասանը կ'օրեն։ Բան-քանը՛հիգ քիւկնոց
օրէնը—քան-քանը՛հինգ ճալաղներու միացումը — կը
դիզեն կալը, ապա երկու մատ հուսկով կ'շրջեն,
կ'փռեն գիզը։ Արեւը աղէկ մը ծծած է խոնաւու-
թիւնն ու լծափայտին մէջտեղէն, պոյդ մը եզներուն
մէջտեղէն երկնցած կամընտեքէն կախուած կամն
—որ զոյգ մը փայտեխչերտերէ կ'բաղկանայ՝ վրան դայլա-
խազեր ամրցած ու սեւ ձուլթուած — չուրջանակի
կ'պտըտցուի շրջուած դեզին վրան՝ մինչեւ որ բաւա-
կան կոտրատուի ու ծեծուի, ապա, մա մ'ալ կ'շրջեն
դէզէն ու շարունակաբար։ Եզները կ'ուտեն ու կ'խըրեն
հասկին մէջ ու կամը կ'կորսուի գրեթէ։ Կամին վրայ
վարոցը ձեռքը, կեղաւը* քովը կին մը, մանչ մը կամ
կտրիճ մը աթոռակին վրայ նստած կամ չեչտակի

կեցած կը դառնան դէզին չուրջը, շրջուն ցանքին վրայ. ծանրութիւնը միրջապէս ու եզներն ուղղա փարո՜ղ մը։ Եզները կալի վրայ են. ամէն քայլափոխնուն կ'մխրճեն գունչերնին օրէնին մէջ ու ծամծմելով յոմլելով կ'դառնա՛ն։ Մէկ քանի լուծք մէկ անգամով իրարու ետեւէն հաղբու կրնան օրերու աշխատութիւնով կորսանել է օրէնը։ Երկու ժանիք հուսկին մօտն է երբեմն խառնշտկելու կամնուած։

Կալը՝ հիւսիսի դէմ է։ Կամնուածը երկար դէզի մը կը վերածեն երնելու*։ Ա՛հ, հիւսիսի շրթները շնչէ՜ն. ա՛լ երեսնին ա՛ն կողմն է. օդը չ'ամպոտած ճուվլէին ցորենը. բամնևտիրոջն իրաւունքը ջոկէին ու հասկըննային թէ՝ ի՛նչչափ արդիւնաւոր է եղեր տատանքնին թէ պէտքի ի՛նչ ծախեր պիտի զորէ գոցել ատի։ Տղուն ոտքը տրեխ չ'կայ կոնակը կուռտիկ. հարսն ընեծ՝ լծակիցն իր տատանքին, լաչակ մը չ'ունի խուխիկուելու՝ Ասոնք՝ պոոպրան պէտքերն են. թո՛ղ մէկալները։ Յետնուցուան արեւը կ'խոնհարի՝ ու հիւսիսի փուքը կ'ուռեցարի։ Չորս–հինգ հոգիներ, երկսեռ, չորս մատ հիւսիսին ձեռուընին կ'սկսին երնել կամնուած ու դիզուած թ՛րղը։ Հիւսիսին ժանիքները թիու պէս մխրճելով վե՛ր օդին մէջ կ'նետո՛ն կամնուածն ու քամին իր քնքուշիկ շոյանքովը մէկ կողմ կ'վանէ յարդը՝ ոսկեհատը ան՛ղը թողելով։ Ամէն նետելնուն աչքերնին վեր կ'ուղղեն։ Յարդին ոս՛ի շիւղերը վառելով, փայփլալով կ'երթան հանգչիլ յարդի նորաչէն դէզին վրայ՝ զայն պարարտացնելու։ Դուր դադար չկայ ա՛լ. մէկը՝ տնտնայ՝ ամէն դիէ կ'կտցահարուի։ «Սա թրղը մէկ անգամով կուտես ու չես բանիր.» «բանողին՝ բա՛ն շատ, չի բանողին՝ պատ տակ.» «գեղը քիլէն՝ ափո՛վ է.» եւն.։

Սա նորուկ հարսնուկը տե՛ս, էրկանը ճշմարիտ լը-ծակիցը, քայլ մը նոր ու հուսկի մը պակաս չի մնար. Տառանքը չինճիտակած է դէմքը ու հրապուրանքը՝ կըն-նապատկած։ Թնճկոտած վարսերուն հիւսկէնն ու խռ-պոպը կ'թափին, կ'քօղաւորեն այտերն, ու յարդի չիւ-ղերը կ'նախշեն ամէն աեղը. հո՛դը։ Միրթ զունջին տակը հանկուշտած յաջակը կ'քակէ, մազերը կ'չոկէ ու կ'պրկէ նորէն՝ կաթի պէս մորթը սեւնալէ ազատելու անշուշտ։ Բիբերուն մէջ խնդիր կ'խաղայ ու սիրային մեղեդիներ կը փափայ։ Երիկը՝ մերթ, հուսկինն յեց ցու ցամատն ուղղահայեացօրէն ճակտին տանելով՝ քր-տինքի ադրրակ մը կ'հոսեցնէ ու կ'խառնէ աշխատու-թեանը։

Ո՛ւր ան մխիթարի թրղը. տապկցեր է, ս՛ս է նամ-լուն, ցորե՛նը. յարդի մեծազանգուած դէզը կ'երկննայ քովը. զոյգերով կիներ կալ-մաղէ անցնեն պիտի նամ լուն, «կոխինքը» ջոկելու ու անգամ մ'ալ կամնելու համար. «Մախիր-կառց»ն ալ կայ-յերնելու։ Վերջնական մաղուն մ'ալ, ու լրացաւ ալ։ Երկրագործին ներս կրա-ծրն իրն է։ Աստուած պահէ դեզը հրդեհէ։ Աքէթի մը կայծէն կ'առնուի, չոփ-չոր։ Բոցնէղէն մանրաղը կ'լզէ արտ, կալ, խըղ, դէզ ամէ՛նն ալ՝ մոխիրի մէջ թաղելով ընտանիքներ՝ ինչպէս պատահեցաւ անցեալ օր՝ Կաւլոսյի ու քաղաքին մէջ ալ։ Երկրագործը չա՛տ ժուժկալ է ու ցանքի քաղքի պահուն գէթ՝ չի ծխեր։ Ալ աշնան ցանքն ունի. խոպան հողեր հերկելու։ Ցորենն ամպերեց ու փառք տուաւ Ստեղծողին։

'907 (Բիւզանդիոն)



# ԵՐԿՐԱԳՈՐԾԸ ՁՄՐԱՆ ՄԷՋ



## ԿՈՎՏՈՒՆ

*Վ. էֆ. Տէր Սարգիսեանին*

Այնքան երկար սերեւկուեր է սառոյ։ Սարերը խաւուեր էին ձիւնով. երկիրն օրհնութիւնովը։ Բռուկները գուրուեր էին։ Նոճիներու, բարտիներու ծիղերը բիւրեղացուցեր էին օդին խոնաւը։ Արեւին տակ կը պսպղա՛ն։

Ծղղլայ մը պեղուեր է տրեխներու ներբաններէն, էշերու սմբակներէն։ Անգին, ձիւնին վրայ՝ գայլին, աղուեսին նաշխուն հետքերը՝ կան։

Արեւը ջինջ օրեր ձմրան՝ առեղներ է խրեր՝ ձիւնին բիւրեղներուն մէջ, կը կածկլտան կը շողշողան...։

Ձայն-ձուն չ'կայ շուրջերնիս։

Հիւսիսի փչօնքը ձիւնին երեսէն թոթափելներ կը սկրթէ։ Բիլ երկինքը կանդրադառնայ ձիւնին վրայ։

Անկէ աղւոր եղանակ խենդ-արուեստիս հանդարտուլու։ Ձիին վրայ ենք։

Որս շատ կայ ըսին՝ Կովտունի Ս. Կարապետ լեռին վրա՛յ։ Ջուրը չ ո ր ա ղ է. չի սառիր։ Բադեր՝ երամներով Ձինկուլներ ալ ու Անղութներ խոլ։ Անղու՛թ, ա՛հ զոյգով ապրող միշտ ու ընկերոջը յաւէտ հաւատարիմ։ Անոր մահէն ետքը՝ ալ չի ջիտկարող. ու անոր ինկած տեղը «Անղութ» խմա՛ անգութ հառաչելով՝ դարձդարձող

միշտ, մինչեւ որ, բարի կապար մը՝ միացընէ զինքը իր սիրելիի՜ն...։

Փորդ կուշտ, անձդ նոր, ձիւնին վրայ վազուըռտել՝ կարշնեղ ձիերուն վրայ հեծած. ի՜նչ հաճոյք եթէ քմայքէն ես մտրակուած մանաւանդ ու 3 ժամուան ճամբայ հազիւ ունիս կտրելիք։ Վստահ ալ թէ՝ պիտի գտնես ճարճատուն բոց մը, օճախ մը կռուած կաղնիներով, որոնց վրայ բոցի մանեանիկներ կը սողոսկին՝ հաճելիօրէն։

Գլուխնիս փաթթած՝ բուրդ պէօրկէն, կռնակնիս առած եամչին՝ ձիուն քամակն ալ գոցող, ձեռուըննիս բուրդ ձեռնոց, ու երկար կօշիկներ՝ ոտքերնիս, ալ ի՜նչ վախնանք՝ բուքէն պորանէն։

Թող փչէ քամին պաղ պաղ երեսի՜ս...

Բայց՝ ընկերս ալ կայ։ Ծղլաները թող դուրսուին փչօնքէն. ան՝ աչքը խուփ բերանը բաց, կրնայ գտնել գիւղը։

Ծայտնիս՝ ձմրան արեւին տուինք, յետնուցուան արեւին։ Ձիւնին ակնոցը՝ լանկզաակած ենք ծոծրակնունս վրայ։ Աչքերնիս՝ ինտոր հանդուրժեն սա ծաւալուն ծածանքին սպիտա՜կ...։

Կատղեր են ձիերը։ Գարին կերեր՝ աչքերնին արուն է քալեր, կը փչա՜ն։ Մութէն լուսը փոխադրելը՝ ի՜նչչափ կը խրտչեցնէ ձին։

Զ'ըլլային սա սանձերը, գլուխնին տնկելը արգիլող սա փոկերը ու առջեւնին կրա՜կ ըլլար՝ կը խուժէի՜ն։

Քալուկ ձիուն՝ չա՞փ կ'ըլլայ։ Ստամբակներովը սանկ, ըղարխցուր քերէ կուշտերը, ու ձուկի պէս կը գալարի. ներքեւ՛դ...։

«Երքէկ աթա՝ վեր աշըքայի պին սափա՝

Մէկէր ալլահտան օլայ քի՛ այաղը ղայփա՛»։

Լռութիւնը՝ իրաւ կը սոսմոկէ մեզ։ Սա անհունութեան մէջ՝ մինա՛կ...։

Անա՛ հեռուէն ստուեր մը մարմին կառնէ։ Քաղաք ելող գիւղացինե՞ր. սա՞ տանոս։ Կը քերենք ձիերուն կուշտը...։ Հասանք։ Կոլանդի, Խանձողի ձգուկ-քփուկ կարշնեղ երիտասարդներ են։

Ալիսի ափերուն վրայ սա եղանակին, որսորդներ «մաղզալ» են չինած։ Որսատէրներ, որսորդներ մինչեւ լոյս կ'սպասեն դայլի՜ն...։

Զոյգ մը տղայ՝ ձողին վրայ՝ անցուցած գայլին դիակը թաթալխած՝ վեր կը տանին՝ ընելով ծիծաղելով։ Մէջերնուն մէկը՝ որուն կապարէն տապալած է գազանը. հպարտութիւնով չիճիտակուած, ձեռքերը յետոյքին վրայ չղթայած աղջկանուն ինկած՝ պահ պահ արհամարոտ ակնարկներ կը թափթէ գազանին վրայ։

Կենդանիին պաղած աչքերը. ճիտին ծուռութիւնը ու ձիւնի՜ն վրայ կաթկթած արունները հրճուա՛նք կ'առթեն մեզի։ Խեղճ անդէն գեղացիներ՝ լեղապատառ կ'ըլլան գայլէն։ Վոնմակով կերթան Կալնայ ու ոչ ոք իր ժամ դուրս ելլել...։

Գեղին շուները՝ հոտ են առեր կը դիմաւորեն մեզ։ Մեր շուներուն հետ հոտուտալնին ու բարեկամանալնին վարկեանի՛ գործ։

Աղուո՛ր բարեգիպում։

Գրելու նիւթ կը պակսի՛ քիչ մը դիտողին համար ...։ Եթէ «ոսկոր-թրփելու ըլլամ՝ տեսածս՝ ինչչափ կերկարի գրուածքը. «Պէտք է»ն չի հասնիր. «կը բաւէ»ն մոռնալու չէ՛։

Բարինկուն տղաք կ'ընենք ու ալ խօսքերնուն ու

քայլերնուն կ'ընկերանանք։ Խօսակցութիւնը «օրս»ի վրայ է։

Գիւղին մէջ ի՛նչ խրախճանք. հարսնի՛ք կայ կար-ծես։ Անհամար լամուկներ ձիւնին վրայ թաւալտկելով* գայլին տես կուգան։ Տաւուլ-զուռնան՝ խայտանքի կայթիւններով կը ղօպանակէ ամբոխը։

Գայլին գլխակը դոնէ դուռ կը պտտցնեն եղ-ձաւար ժողովելու։ Ոչխարի տէրեր՝ գրթթերնուն եղածին չափով կուտան՝ փոր մը թուք նետելով դիակին վրայ «Թո՛ւ–կոծիկ»ով։ Բայց գայլին մագոտիքէն չընկղկա՛ծ* չ'ըլլայ չուներուն բերանը ու վտանգուին. մատաղ մըն ալ ասոնց չ'արժե՞ր. ու ոչխար մը մորթելով՝ գմակէն ձեռք-ձեռք կը թափեն աղջիկներին՝ եղին միջոցով սկր-թեցնելու փակած մագոտիքը։

Հարս-աղջիկ դուրսը են։

Արթին աղբօրը սենեակէն զատ՝ ո՞ւր ազանինք։ Տուն, հիւրանոց փոխելն ալ մեծ ամօթ է ու երկու կող մին ալ՝ անպատուութի՛ւն։ Ալ ի՞նչ ուզենք, տան տիրոջ երեսը խնդում է, որանից կը սիրէ մեզ։

Աղբար, աղբի՛ւրդ եմ եկեր,
Ծարուցեր ջու՛րդ եմ եկեր.
Ես քու ջուրիդ չ'եմ եկեր՝
Ես՝ քու սիրո՛ւդ եմ եկեր։

Ախորժակ ըլլայ՝ քա՛ր ուտես կը մարսես։ Բակե-ղաթնուս աչքերը կոռուած են ուտելիքներով, տան-տի-րանց բերուած նուէրներով։ Ճերմակ ջուր ալ ունինք։ Գեղանը հազիւ կը գտնուի օղի՛...։

Սենեակին պատերը կը կահաւորենք մեր հագուստ-ներով. զէնքերով։ Օճախին բոցը՝ մեղկութիւն մը կը ծաւալէ սենեակին մէջ։

Հարսնցուներու մարմայ աւելը՝ վրան հայելիներով, ղանակներով, քօժօժներով կը պատցնէ սենեակը։ Ել թիները կը թօթուէ, կօշիկներս կը քաշէ։

Բոցին քիթը խոթուած, մուխէն սեւցած թէյամանը կը վժժա՛յ՝ կափարիչը թրթռացնելով։

Սեւրակուած թող ըլլան դաւաթները, ի՞նչ կայ աղու չէ որ մեզ զարնէ. ներսի գինիս ա՞նչափ մաքուր է, կը տաքուկնանք։

Ճամբան անօթեցած չ՚ըլլանք։ Ձիէն իջածիդ պէս սուրճէն ետք սեղանը կը պատրաստեն գեղացիները։

Ձմրուան մէջ՝ «հա պիր ալա՛ֆ, հա պիր փիլաֆ» իսկ ապուրը ապրանք է։ «Հացը գրած՝ բանն անիծած» սեղանին վերեւ ենք. քովերնիս լեցուն գեղացիներով. «բարի-եկիս»ի եկողներ։ Ամէնն ալ ունին՝ մասնաւոր հարցումներ, . . ։

Հացի ու կռիւի հրաւէր չ՚ըլլար։ Ճաշը պատուելու, հիւրը պատուելու համար, ե՛րող տարեց անձը չոքի պիտի սեղանին գլուխը. իսկ սեղանին վերեւէն ոտքի ելլել չ՚ըլլար. ո՛վ ալ ներս մտնէ, հայէն վեր ո՞վ կայ սա աշխարքիս մէջ. նէմէ՛թ* վրան կոխեցի՞ր՝ անգիտութիւնով, պա՛ք ճակտիս դիր՝ վերցուր որպէսզի, պուտ մը հացին դէմ չի գողա՛ս ապաքայո՛ւմ. . . ։

Քահանան կը նախագահէ սեղանին, կարգաւոր է «հայր-մերը» խաչակնքումը ու ճաշակեսցուք խաղաղութեամբ զպարգեւս եւ սիրով» ըսած ու երկնցած է ինք ապա հիւրերը, ու յաջորդաբար պատիւի տարիքի կարգով. . . ։

Հայուն սեղանը՝ օրհնա՛ծ է. սեղանին վերեւ կան անթիւ հրեշտա՛կներ ուտողը կը կշտանայ ու նորէն կ՚աւելնա՛յ. . . ։

Սուրճերէն ետք, թո՛ղ հանգստանա՛ն ըսելով մեկնելու փափկանկատութիւնը կունենան այցելուները։

Ասպնջականութեան անդամները՝ ա՛լ չուրջերնիս են։

Բոկեղաթնուս երկաթ օղակները քակելով անձնիւրին կը կարկառենք նուէրնիս, իրա՛ւ, անարժէ՛ք բաներ, բայց, պարապ-ուրախ գալն ալ՝ ամօ՛թ է։ Լաչակներ ունի՛նք, հինայ գանա՛կ եւայլն։

Ձմռա՛ն մէջ՝ գիշերել դեղը՝ հաճելի՛ է։ Ամառը՛ լուփայտոջի՛լ.... Դուրսը քամին, բուք-պորանը կը չաչէ, կը մռռկի՛։ Ի՛նչ հաճոյք սա՛ կոկորդիկ անկողինը ու-տաքուկ սենեակը, ծուխո՛վ լեցուած...։

Դէմ լուսին ելած ենք։ Քովի պահէն՝ գոմէշներու, եզներու, էրրոցներ կուգան։ Տանը մշակը կալ-մաղերով կը մտնայ-կ'եկյայ մառառը՝ կերելու ըողուկը՝ ապա ջրելով՝ ներքեւնին ալ եկ-քերելու։

Թոնիրը՝ բոցավառուած է մարբկը։ Խաչ-երկաթին չորս աչքերուն վրայ նստեցուցած մէյ-մէկ խալկին. խալկնծուկ, պտուկ։ Մէկին մէջ՝ բացկթան ապուրը կը գթգթա՛յ միւսներուն մէջ սըումուկը, աղձանը։

Խմորն ալ՝ ղարթեր է։ Կը գնաեն որ քրքիրը գրգիռը-առնէ։ Աղ՚ջիկները՝ լողելով կը բանան կը տափկցնեն խմորը, ու մարիկը, տակը-իջեցուցած, գոլը գըտած թոնիրին չրթին կը կպչէ ռափաթայով ու բըտելով, ծաղկոտելով, սփելով կը փրցնէ չո՛թը։ Ա՜հ Ջառու պոնիր՝ թոնիրի չօթ՚՚ եղա՞ւ ալ ի՛նչ ուզէ մարդ։ «Հաց ու պանիր կեր ու բանիր» կամ «Պանիր հաց՝ աչքդ բաց» — նշանաբանը մեր գեղացիներու՛ն է։ Անոնք կ'ըսեն ալ «քուն ունեցողը բարձը ինչ ընէ՝ ա-

նօթի եղողը՝ ղաթեխը»։

Այրերը, անդին, ախոռին մէջ համախմբուած, կենդանիներուն վրայ, գեղին դոյթակղութիւններուն, աղքատներուն, թաղականներուն ու քաղաքականութեան վրայ կը խօսին. կը վիճի՛ն կը կռուին ալ։ Անանկ ինքնատիպ, նկարագեղ ու մտացի բացատրութիւններով, որոնք մեր հիացումը կը գրաւե՛ն. ։

Թ...ենք ալ՝ Թոնիրը մարե՛ր են. հաւցուցեր են ալուրնի՛ն...։ Գեղին մէջ ասկէ տխուր պարագայ չ՛կայ միայն հա՛ցը պէտք է իրենց... ուրիշ բանի չեն բաղձար իսկ։

Արտերը՝ խոպա՛ն կը մնան։ Պարտէքին տեղ, գեղացին կը կ ե ր ե կ ն ա յ արտ ալու, անչափ անարժէք է իր աչքին հո՛ղը, քանի որ հերկելու ոչ լուծ մ՛ունի՝ ոչ ալ նետելու սե՛րմ...։

Վաչխառուին խնդիրն ալ կա՛յ, արունքամի՛ն...։ Ի՛նչ կերպեր օրինաւորցնելու ապօրինութի՛ւնը։ Վաչխառուն՝ կուգայ, կը գնէ փոխ դրամ տալիք մարդուն ո-եւ է մէկ կենդանին, եզը, գոմէշը. կուտայ դրամը. ու նորէն կը ծախէ իրեն, այս անգամ՝ մուրհակը եզի-գին գրելով...։ Ծիւաղութիւն...։ Ամէնն ալ՝ գեղն են, հարկահաւաքը, եղներու մասնավճարը պահանջողները, ու ինչ բռնաբարումո՛վ..։

Վաղը՝ գարնան դուռըտիքը բացուելէն ետք՝ ամէնը մէյ-մէկ դի. մէյ-մէկ լեռ կ՚երթա՛յ։ Ալ ո՛ւր գտնեն ջուխտ մը խօսք փոխանակելու հետերնին։

Գեղին դպրատունը՝ ձմեռը կը բացուի։ Մաղ մը ձագեր՝ մ խ կ ի ր ո տ լաթերով, ջլեմերկ՝ եկեր խըռնուեր են սրտեղ, ուսմո՛ւնք առնելո՛ւ, ո՛չ ոք կը հետաքրքրուի վարժապետին գործովը։ Տղան տուն մը չարական ըսա՛ւ

ալ լրացա՛ւ...։

Պաղքի ուսումնական խորհուրդը՝ ի՛նչ աղէկ կը-նէր, եթէ քիչ մը սկսէր հետաքրքրուիլ աս դպրոցներով։ Բայց մեր ուսումնական խորհուրդը՝ ի՛նչ հասկնայ ա-սանկ կարեւոր հարցերը. անոր գործը թնճկոտող է ար-դէն անինչան բաներու համար կռուող, կարեւորին չ'անդրադարձող խե՜ղ։ Ազայի ձագեր չե՞ն ամենն ալ գրեթէ, իրենց յերծնուն մէջ սխանային՝ կ'աւանայի՞ն թէ՝ ուսումնականի անդա՛մ պիտի ըլլան։ Տխուր բար-քեր..։
Ու վերջապէս կ'անցնինք գործերնուս գլուխը. որսին։

Ա՛հ, գետափունքին ձիւնին վրայ կառուցուած աս դիտանոցնիս «մաղզալ» ուր բեւեռային ցրտութիւն՝ մը կայ, որ, ատամնիս կը կափկափեցունէ՝ կըսպասենք սաւերի մը անցնելո՛ւն։ Ի՛նչ հաճոյք՝ լեցնել մա-խաղը՝ ու բերել բաժնել բարեկամներուդ՝ հպարտու-թիւնով...։

Անա՛ կեա՛նքը...։

907



## Ա· ՄԱՄՈՒԼԻ ԿԱՐԾԻՔԸ—

### «ՄԵՐ ՄՏԱՒՈՐԱԿԱՆ ԿԵԱՆՔ» ԹԻՒ 38 '904

«Արեւելք»ի մէջ՝ Կարպօ ՆՇՄԱՐՈՒՄՆԵՐ խորագրին տակ՝ գաւառացիի իքնատիպ գրիչով մը կուրագրէ Լ.Ր ԴԻԲԻ ՊԱՏԿԵՐՆԵՐ այլազան պէսպիսութիւնով. ուր, հասուկ-բուսուկ աղջիկը, ճողած էրիկը՝ մանզ հարսին կուչտը, օրօցքին մէջ կոթնկեր մանչուկը՝ աղրապլիկ ԷՄԷ Ն, կարչնեց ու արեւին տակ եփած երիտասարդը. մաղասի տապրակ մը բերնին մէջ դարձմրձկող ծերուկը՝ երդիքներուն վրայ փռուած, երկնքի լուրթ կամարին տակ իրենց կէս քուն զարթօնքին եւ անկողնային դիրքերուն մէջ կը վրձինուին դրչի հապճեպ ու վարժ խաղացքով մը, յստակ, բնական ու կենդանի։

### «ՄԵՐ ՄՏԱՒՈՐԱԿԱՆ ԿԵԱՆՔԸ» ԹԻՒ 46 '904

«Արեւելք»ի մէջ «ՆՇՄԱՐՈՒՄՆԵՐ» խորագրին տակ, Կարպօ գաւառացիի առոյգ եւ նկարագեղ վրձինով կ'ուրուագրէ ԱՇՕՒՆԻ ՊԱՏԿԵՐՆԵՐ, ուր, սինէմաթօկրաֆի արագ յաջորդութեամբ մը հետզհետէ տեսարան կուգան աշնանային եռ ու զեռ կեանքը գաւառացի կիներու ու աղջիկներու տնական նիստ ու կացը, զբաղումները անոնց հոգեկան զուարթ, տխուր տրամադրութիւնները։

—Փոքրիկ դիտողութիւն մը. գաւառական խել մը բառերու եւ ասութիւններու յաճախութիւնը՝ որ այս կարգի իսկատիպ գրութիւններու ամէնէն ցայտուն հրապոյրը՝ կը կազմէ ստէպ անհասկնալի կը թողու գրուածքին զանազան մասերը ու մթութիւն մը կը ձգէ ամբողջութեան վրայ. փակագծով գրուած մեկնութիւն մը կամ յօդուածին տակ համառօտ բառացուցակ մը՝ ոչ միայն այս անպատեհութեան առաջքը պիտի առնէր, այլ նաեւ գաւառաբարբառներու ուսումնասիրութեամբ զբաղողներուն անուղղակի նպաստ մը պիտի ընծայէր։



# ԳՈՐԾԱԾՈՒԱԾ ԳԱՒԱՌԱԲԱՌԵՐ*

ագնծիլ — այրիլ

Ադամամութ․— մթնիկ լուսինին ընկղմելէն վերջ ու-
արշալուսէն առաջ տիրած սոսկալի մթութիւնը

ադրապլիկ․ — ակռաները թափած

անդէն-խալկին — մեծ պղինձ «ղազան»

աղուէնցու — տարուան մը բաժնելու չափ ցորեն

ապրցու. ապուր-ցու — ապուրի մէջ գործածելի հատեր

ալիքնին-կուլկընին — մազերնին-բունքերնին

աչքին-առւնը — ծիածանին չուրջի ճերմակութիւնը

արեւածուն — կէսօրին արեւը անելու պահուն

աղջել — ա. աղաջել

ալով — թ. առանց լուր տալու

աղտոր — կ. Սումախ, տունկ մը՝ թթու պտուղով

առիջին դարձէկները — առաստաղին փայտերը

ախլանք — դուռը գոցելու համար երկաթ շղթայ մը

անընտիլ — ա՛նը, ցաւը դադրիլ

ագէօխ — արտի բանողներու կերակուրը

ակռայ-ժաժելէ — տիշ-քիրաւը

աքողք — թաղումորներուն հրամցուած չամիչ-հացը

աստղը ցած — սիրուն համակրելի․ — բարա՝ դաժան դէգ

աւտընալ — ա. հաւատալ

անատօթ — երեք ժանիքով անկիւնաձեւ չարուած թի

բխաղու — ձիերուն ոտքերը իրարու կապող՝ շղթայ

*ա․ աղաւաղում թ․ թուրքերէն կ․ Կիւրինի բառ

բոլորել   այրիլ· կարմրիլ այրելով։
բկչել   կուռչ-գալ՝ մանուկն ձեռքով ոտքով քալելը
բըլոր   կ.՝ ցամքած ու եղի մէջ կարմրցած ծիրան
բաչկտուր   մակարոյծ. անամօթ. աներես
բոզ-լացուկ   սուտ-լաց. բոզի լաց. կեղծիք
բթել   սննդարար կերակուրներով պարարտացնել
բացօնք   կ. օճախը վառելու համար փայտի չիւղեր
բուռ   բռան   կիրի լեռ
բացկթան   թանը պահելով՝ երեսի չիճուկը թափուած
        տակի դիրտը եղոտ

գլխել   գլուխի մասը որոշել. չապիկը ձեւել կարել
գորտն-բուրդ   մօրացած ջուրերու կանանչ մազոտիքը
գերցկըտուք   չատակերութինէ անմարսողութենէ օդին
        ստամոքսէն բերանը խուժելու ատեն հանած ձայնը
գֆթէն ելած   ա. գութէն ելած, սրտով փափաքած
գրփացած   փխրած. արեւէնքնքուշցած ցանելահող
գրգուցնել   փիլաֆ եփել

դալ   նախակաթ
դաշտիլ   լայննալ, տաղտըննիլ. — խելքը զարմանալ
դու-դուել   խոշտանգելով վարուիլ
դոժկիլ   եղը լեցուած, ձաւարին հատերը փաչիլը
դհրատ   խոնաւ մառաններէ արտաշնչող զով հոտանքը
դիրկոն   տես անատոթը
դահիլ   առանց իյնալու նստիլ փոքր տեղ մը

երթմճով անթիրի   երկու կողմերը մինչեւ կոնքերը
        ճղքուած հագուստ մը՝ կինեթու
երկու պրկունք   երկու խօսք

երամուիլ   հաւաքուիլ. երամ. տոհմի գերեզմանաքարեր
երնել յերնել   հովուն նետելով յարդը ցորենէն զատել

զարթիլ   արթննալը՝ խմորին. երիտասարդութեան

էրրոց   թեթեւ շարժում
էր՚յանք   կարծրաքարէ զոյգ մը տափակ ու բոլորշի
        քարեր ձաւար, մթիկ մանրցնելու ծառայող
էրդի-պնակ   առաստաղին վրայ բացուած լուսամուտը
էծէ   կ. մօր կամ հօր մայրը. ո եւ է տարեց կին
էռցնել   երկաթի մասեր՝ տաքութիւնով իրարու զօդել
էջն-դարձ   ամուսնացած աղջկանը՝ առաջին անգամ
        հօրը տունը դառնալը՝ իր ամուսինովը
էօրէն   քաղուած ցորէն զալի

ըռղակ   լծկան կենդանի. կով ձի
ըռնտիկ   բաւական գեղեցիկ. անթերի
ընքուլ   ա. յօնք

թըղ   թ. ցորէնը յարդէն չի զատուած; բայց ծեծուած
թթնկիլ   շատ աղաչել. խնդրել. վրայ իյնալ
թեւքել   կ. թոթուել թեւը եւ այլն
թպղի   9 ամիսէն առաջ ծնած երեխայ. հիւանդկախ
        ու ճնկան
թխրիլ   բրինձին եփելէն վերջ հատերուն փակչիլը
թալչի   թ. պորէն, բաւականաչափ ո եւ է յագեցում
թրծել   բրուտին անօթները կրակով այրելը
թափլայ   խաւաքարոտէ ցած գլխանոց մը բոլորշի որուն
        վրայ ղանակներու չարքեր կան
թքոտուածք   պախշիշ պարգեւ ո եւ է աշկերտի

Թապլակիլ  Էշուն փոշիին վրայ դարձ դարձիլը
Թաթալըխել  իր կարողութենէն մեծ բան մը կրել

Իլիկ  ջահրային միջոցով դարձող երկաթ թելը
Իրարել  յարմարցնել
Իլիք  լեցուն առատ
Իշնալորիկ  անդութ. կռունկի նման կենդանի

Լող  խմորը տափկցնելու գործածուած փայտ գլան
Լել  լեցնել
Լաբան  կ. բուրդի մանուած թել. թէլ
Լխլում  խփում, քամուելու չափ թրջուած

Խշտել  սրբնակներու ու խաչերու հանդէպ կատարուած
 խոշտանգումներու պատիժը Աստուածային
Խապ  փոխ առնուած կամ տրուած կաթ։
Խոտ-կուռ  օրօցքին տակը փռուած խոտով կռուած բարձ
Խրխուտ  չոփ չոր. արեւին տակը չորցած
Խուխիկորել  լաչակներու մէջ դէմքը ծրարել
Խալկնծուկ  փոքր ղաղան պղնձէ
Խապղըցու  խածաղցու. ցորենը կրակով բովերել
Խարկել  ա. խարակել, կրակով բոցով գունատել
Խանդրել  լաթեղէններու դեղնիլը աղտէն
Խարոխել  խմորին երեսը սեւնալը
Խնձորակ  pommette  յարգանդին վրայի մասին
Խրխնճուկ  մանր, քովնտի որոշապէս երեւցող դալարիք
Խօսք-մտուկ  խօսք մտիկ ընող
Խնոցի  մածունը հարելու փայտ գլանը
Խէցիկ  պտուղներու թռչուններէն կտցահարուածը
Խոփ  թոնիրին բերանը գոցելու հողէ կափարիչ

ծծմօր  կաթի տեղ կաթնկերին ՚բերանը չղարչի մը կտորին մէջ ծամելով լեցուած թութ, յողում

ծուել  ցորենը վեր վեր նետել՝ քարը զատելու համար

ծամել  արկօտթ  խմել գինին. դրամ ուտել

կուտիկ  մանկական հաղուստ առանց թեւի

կուժ  փայտ ջրանօթ. «չամ պարտաղի»

կռել  անխնայ լեցնել. խօթել

կաւառ  արտերը այղիները ոռոգելու կապուած ջուրը

կոգկաճում  հաւի հաւկիթ ածած պահուն հանած ձայնը

կոնծիլ  չորնալով դալարիլ

կկուզել  յետոյքը գետինին չի դպցնելով նստիլ

կերեկնալ  ա. կ. կերկերալ– աղաչել թթնկիլ

կաժ–առ  մանուածի կաժերը վրան կրող գործիք մը

կոտցուիլ  իրարու վրայ դիզուիլ

կախ–դուռ  երդիքի դուռ

կերժկտալ  ծնօտին ամբողջ բացուածքովը յորանջել

կտտել  մանր կարաններով կարել. կարանով ամրցնել

կէօրէ  թ. համեմատ

կըլապտոն  գերձաններով չինուած ծաղիկ

կըխկըխալ  հիւանդին ոքոցը, անուժին քալուածքը

կեր–ցուռ  ոտելախտ, թոքախտ

կճեպել  վրայի մաշկը հանել. սիսեռին ցորենին եւն.

կեղ–առ  անօթ եղներու աղբը առնելու, կամնելու աման

կոթինք  կամնուած ցորենին կոթով մասը

հինել  գործելու համար մանածը կարգաւորել

հառանի  մեծ պղինձ ղազան

հրուք  ա. հորուք օճառի սպառած ու փոքրցած մասը

հինայ  թ. ղնայ. փոշի մը առելի կերպով ներկող

հաւ կուր  աչքի պուչութիւն. լոյսի չի կրնալ նայիլ
հալք  հալիլ հատնիլ հիւանդութենով
հանդէպք  վախէն հիւանդանալ
հարկինք  հարկ պատուասիրութիւն, հարկել
հուսէլի  ա. հոսելի. Հ 46 ժանիքով թի՛ երնելու

Ձեռաց-ուրախ  ամենօրեայ գործածելի
ձերեմաղ  ձիու մազով հիւսուած մանր ծակերով մաղ
ձգտել  ծեծել

ղութնի  հին թանկարժէք մետաքսահիւս կերպաս
ղըտըխ  ննթածնոտ, դունչ մարդկային
ղախ  խնձորին կեղեւուած ու չորցուածը
ղաթեխ  թ. հացին հետ ուտելու ո եւ է բան

ճողած  նիհարցած. չորցած
ճութ  թ. փոքր ողկոյզ
ճողան  լաստիկ
ճողիլ  սահիլ. հպարտանալ. երկննալ
ճալազ  մէկ կառքի տարողութիւնով քաշուած հասկ
ճկել  խոնհարեցնել

մարխ  եխւզոտ, խէժոտ փայտ
մխկիր  հինցած լաթ
ման  չէհերու ըմբրին վրայի դեղնորակ ծաղիկները
մրափել  գլուխը վար վար խոնհարելով քնանալ
միչմիչ  ծիրան
մասուրա  թ. եղէգի մասեր՛ վրան մանած փաթթելու
մէսէրէ  կ. թութ քամելու տեղ
մէկիկ  կ. չորցած ծիրան

մալէզ    խուսով տրորուած ու եփած ապուր մը
մշտուա    մանած գործելու՝ 400 կանգունոց
մկնդեղ    աղ սուլէյմանի biclorure de mercure
մըղլ-մըղլ    անըմպատ.
մառայք    յարդ պահելու տեղ։

յերծնուն    ա. երազնուն
յարդլինք    ա. արդլինք
յիսնակ    ա Հրեշտակապետին նոյեմբերին մէջ
յինունք    զատկէն մինչեւ ս. եղիա
յետնուցուան    կէս օրուընէ վերջ, իրիկուան.

նէզիւկ    կամրը վրան անցնելու կամարը
նէվ-քէսէ    parvenu    չտես
նամլու    թ. ցորեն
նէմէթ    թ. հաց

շլթի    չափութով լեցուած անկողին
շնթրկիլ    շանը պառկելու ձեւը
շիլֆ    թութի քամուածքէն մնացածը
շարմաղ    ձիու մազէ նուրբ մազ
շընկլկիլ    փուշին փակչիլը մոթին վրայ

ոսիոր-թըփել    մանրամասնել

չուչուլած    սմքած, անաշխոյժ
չոր-աղ    աղի ջուր կամ հող
չորթար    բամբասող կին, իրար ձգող կին
չոր-թան    քէչ. ճորցուած թան
չէչ    մեղրին մէջի մեղրամոմը եւայլնը

պատը-պատել փախչիլ. գողնալով կորսուիլ
պէտլայ հայլին գլուխին քօղը
պտուկ-կոյող կարմիր խոշոր 5 փերթերով ծաղիկ մը
պնչերը քթին — քիթին ծակերուն քովերը
պոռչալ ա. պոռալու ատեն
պիւկիւ թ. դիւթանք
պոչատ թեթեւսոլիկ աղջիկ

ջանրայ ա. բուրդ մանելու ճախարակ
ջրթթախ չէնչող աղջի՛կ, կին. ուրախ
ջուր-փոխել օդափոխութիւն

ռօֆիա մանր տղաներու մորթի հիւանդութիւն
ռափաթայ՝ խմորը վրան անելով թոնիրին կպցնող
տերեւանիս գործիք մը բոլորշի

սամի եղները լծափայտին տակ պահելու փայտերը
սորսորիլ զարնան ձիւնհալէն կազմուած հոսումները
սանտուրք երկաթ ատամներով բուրդը սանտրելը
սոխուռած եղին մէջ տապկուած սոխ
սիլլիմ ձեռաց սանդուխ
սէնիր ա. սեղան կերակուրի
սընանդրը թ. փորձուած
սումուկ ձաւարին մանրուքովը եփուած կերակուրը
սնու թ. սինին, անկեղծ
սեւ-գնտիկ թաղարջին վրայ ցանելու հունտ մը սեւ
սընտու թոնիրը հրահրելու համար ներքեւի ծակը
սաղաճախ թ. տուրմուխ մը՛ քաղուած հասկը ժողուելու

վեր-տուք մանր բշտիկներ մորթին վրայ

վալել-վալեցնել  ա. վայլել վայլեցնել
վալա  կտաւ մը վրան գնտուած խմոր չարելու

տեփու.ր  փայտ, տափակ կլոր գործիք մը ցորենը ծուելու
տէնիր  կ. երգիք
տաշտի-քերուք  մօր մը վերջին ծնունդը.
տաղաուար  տօնական օր
տիւրիկ  կռնակ կապելու պարկ մը հաւի ճամբորդութեան
տրեխ  կաշի նրբան մը փոկերով պրկուած ոտքին

քմային  ա. քմայքին
քչոց  եկեղեցական ձայնատու սպաս մը
քիրքիթ  թ. գորգին հանգոցները խտացնող երկաթը
քիրման  փայտէ պտուտակ մը տոքի վրայ մանելու
քրտն-խաչ  քրտինքէն վեր-տուք մը մորթին վրայ
քոթել  խոշոր խոշոր կարել
քերթել  մորթուածի մը մորթը դանակով հանելը
քիթ-բռնող  մակարոյծ
քըթլայել  անախորժակ ուտել
քիրքիր  ա. գրգիռ
քէշկէկ  կորկոտ միսով եփուած

օղան  ա. ուազան մու բացիկ: շրջուն աղքատ
օղկալ  աղուն ծծած կաթին եռ գալը
օցինք  բուրդին սատրուելէն ետքը աւելցածը
օգտել  բաւել

ֆուխէրի  թ. աղքատի

# ԿԱՐԵՒՈՐ ՎՐԻՊԱԿՆԵՐ

Հակառակ մեր փափաքին՝ շատ վրիպակներ մուտ գտան՝ մանաւանդ Ա., Բ., Գ. ֆորմաներու մէջ. բայց սա քանի մի հատը հոս դնել անհրաժեշտ նկատեցինք.

| սխալ | ուղիղ | էջ |
|---|---|---|
| մարդ մը | մայր մը | 8 |
| դանակներ | զանակներ | 10 |
| Շուլըղը | չուլլուղը | 14 |
| ինքն | ինչքն | 22 |
| ընտոիկ | ըոնտի՛կ | 30 |
| քէտէնէկ | քէփէնէկ | 33 |
| քոքելու | քոթելու | 48 |
| բաբաթուն | բաբախուն | 60 |
| կեա ըլլալ | կեր ըլլալ | 62 |
| տանարցուցած | տանորցուցած | 84 |
| ջուիդ | ջուրիդ | 111 |



# ՑԱՆԿ



